# Փոքրիկ նավաստին

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



Փոքրիկ Արան ծովայինի
Նոր համազգեստ է հագել.
Գլխին սիրուն գլխարկ ունի
Ժապավենով ոսկեբել:

Ու Սևանից բացի բեև
Նա չի տեսել ուրիշ ծով,
Բայց իր մտքի նավով բերև
Անցել է շատ ծովերով:

Հայրը նրան ցույց է տվել
Մեծ քարտեզի վրա տան
Սևանից էլ խորը ծովեր,
Օվկիանոսներ անսահման:

Ամենից շատ սիրում է նա
Ծովերը մեր հայրենի...
Երբ մեծանա նա իսկական
Քաջ ծովային կլինի:

Այժմ նավը իր խաղալիք՝
Քարտեզին է դրել նա,
Այնտեղ, ուր որ ծովն է Բալթիկ
Ու կանգնել է ժամապահ:

Սպասում է նա երազուն...
Եվ թվում է, թե ահա
Քարտեզի լուրը, կապույտ ծովում
Թղթե նավն իր կլողա,

Ու մանկության ափից պոկած
Նրան ծովը կտանի,
Եվ հողմերին անվախ պարզած
Դրոշը կծածանվի:






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 7

ՀՈՒԼԻՍ

39

1953 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Մանկական երկաթուղում:**

*Նկ. Փ. ՄԱԼԱՅԱՆԻ*




(Սուզանավորդի պատմածը)

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ինձ շտապ կանչեցին հրամանատարական ձեղնախուց:

Երբ ես ներկայացա մեր սուզանավի հրամանատարին, նա շրջադիտակի հետ աջ ու ձախ էր պտտվում և զրուցում մյուս շրջադիտակի մոտ կանգնած շտուրմանի հետ:

— Թյուրքական ձկնորսական երկկայմանավեր են և հրետանի չունեն,— ասում էր շտուրման Ցիգանկովը:

— Գիտեմ,— ասաց կապիտան-լեյտենանտը և խոսափողով հրամայեց սուզանավը դուրս բերել վերջրյա դրության: Եվ երբ հրամանը կատարված էր, նա հարցրեց.

— Դու, կարծեմ, թյուրքերեն գիտես:

— Ճիշտ այդպես,— պատասխանեցի ես:

— Հրաշալի է,— բացականչեց շտուրմանը:

Մինչ ես զարմացած մտածում էի, թե ինչու մեր սուզանավի հրամանատարին հանկարծ պետք եկավ իմ թյուրքերեն գիտենալը, և ինչու «հրաշալի է», որ թյուրքերեն գիտեմ, սուզանավի հրամանատար կապիտան-լեյտենանտ Լուկինը դիմելով ինձ ասաց՝

— Հետևիր մեզ:

Եվ բաց անելով հատուկ դռնակը, ճարպիկ մի թռիչքով բարձրացավ հրամանատարական կամրջակի վրա:

Ես կամրջակ բարձրացա շտուրմանից հետո: Թարմ օդից և արևի պայծառ լույսից գլուխս պտտվում էր և առաջին հայացքից ծովի և երկնքի կապույտից բացի ոչինչ չէի տեսնում: Բայց շուտով հորիզոնի վրա երևացին երկու ձկնորսական նավեր: Մեր սուզանավը դանդաղ մոտեցավ նրանց և կանգ առավ մի քանի հարյուր մետր հեռավորության վրա, որտեղից պարզ երևում էին տախտակամածներին խռնված նավաստիները: Հրամանատարը դարձավ դեպի ինձ.

— Դե՛, լեզվագե՛տ, շնորհքդ ցույց տուր, հարցրու՝ ի՞նչ են անում այստեղ:

Ես իմ կոտրված թյուրքերենով ձայն տվեցի նրանց և ստիպված եղա մի քանի անգամ կրկնել հարցը, որովհետև թյուրք նավաստիների աղմուկից բացի ոչինչ չէր լսվում:

Կամրջակի վրա կանգնած մեկը, ըստ երևույթին նավապետը, թելադրում էր մի նավաստու, որն իր ամբողջ ձայնով մեկ գոռում էր մեր կողմը:

— Մենք ձուկ ենք որսում,— վերջապես կարողացա հասկանալ նավաստուն:

— Իսկ ինչո՞ւ եք ափից այսքան հեռացել:

— Այստեղ որսը լավ է,— պատասխանեցին նրանք:

Դա, իհարկե, անհավատալի էր, բայց հրամանատարը շարունակեց:

— Երեկ այստեղով ռազմանավեր անցե՞լ են,— փորձելու համար հարց տվեց կապիտան-լեյտենանտը:

— Ո՛չ, չեն անցել:

— Տես հա՜,— մատը թափ տվեց հրա-





*մանատարը և խոսափողով հրամայեց հեռանալ երկկայմանավերից։*

*Զինորսական երկկայմանավերը ափից այդքան չեն հեռանում։ Թյուրքական նավերի ներկայությունը կասկածելի էր. սակայն մենք չուզեցինք մեր «չեզոք» հարևանի դրոշը կրող նավերին ձեռք տալ և հեռացանք՝ շարունակելով ճանապարհը։*

***

*Մեր նավը ալմաստի նման ճեղքում էր ծովի կապույտ ապակին, հետևից սպիտակ գիծ թողնելով։ Հերթապահությունից ազատ նավաստիները տախտակամածի վրա հավաքված զրուցում էին և ծխում։ Ջրի տակ ծխելն արգելվում է. և ահա նրանք օգտվում էին հազվագյուտ առիթից։*

*Կամրջակի վրա, հենված ցանկորմին, կապիտան-լեյտենանտ Լուկինը մտազբաղ նայում էր դեռևս հեռվում բաղերի չափ երևացող երկկայմանավերին։ Շտուրմանը ծխամորճը ատեպ-ատեպ բերանին մոտեցնելով և հեռացնելով պտտվում էր կամրջակի վրա։ Երևում էր, որ նա հուզված է։*

*— Սատանա՛ն տանի,— վերջապես չհամբերեց նա,— մի՞թե մենք չէինք կարող նրանց գրողի ծոցն ուղարկել։ Չէ՞ որ հինգ մատի պես պարզ է, որ նրանք լրտեսներ էին։*

*Կապիտան-լեյտենանտը պատասխանելու փոխարեն հարցրեց.*

*— Ի՞նչ ես կարծում, լեյտենա՛նտ, մենք կհանդիպե՞նք փոխադրանավերին։*

*— Գուցե հանդիպենք,— ասաց շտուրմանը մեղմացած։*

*— Ես հավատացած չեմ։ Նրանք հիմա կուրսը կշեղեն։ Երկկայմանավերի վրա ես էլ եմ կասկածում, բայց ի՞նչ կարող ես անել։ Նրանք «չեզոք» երկրի դրոշ էին կրում։ Բայց լսի՛ր, շտո՛ւրման, նրանք կարող են նաև կուրսից դուրս չգալ։ Առաջինը՝ վստահ չեն, թե մենք իրենց կգտնենք, երկրորդը՝ նրանք լավ գիտեն, որ ամենաապահով կուրսն են ընտրել։ Ես կարծում եմ, որ կբավարարվեն միայն կատերներին օգնության հրավիրելով։*

*— Ուրեմն ծանր և վտանգավոր մարտ է սպասվում։*

*— Այդպես եմ կարծում,— պատասխանեց կապիտան-լեյտենանտը և բաց դռնակով իջավ հրամանատարական բաժանմունք։*

***

*Լուսադեմին մոտենում էինք գերմանական փոխադրանավերին հանդիպելու վայրին։ Մեզ հայտնի էր, որ գերմանական երեք ծանր փոխադրանավ, առանց ռազմանավերի ուղեկցության, Ղրիմի հարստություններով բեռնավորված ուղևորվում են դեպի Ռումինական ափերը։ Մեր խնդիրն էր՝ խորտակել այդ նավերը և բնավ չէինք կասկածում հաջողության վրա։ Բայց ահա հայտնվում են ինչ-որ թյուրքական ձկնորսական նավեր, որոնք ստիպում են մեզ կասկածել։ Այդ նշանակում էր, որ փոխադրանավերն ավելի զգույշ կլինեն։ Եթե կուրսից էլ չշեղվեն, ապա կարող են օգնության կանչել արագընթաց կատերներին, որոնք սուզանավի ամենավտանգավոր թշնամիներն են։ Դրությունը լրջանում էր։*

*Կապիտան-լեյտենանտը սովորականից մի քանի անգամ ավելի եղավ բոլոր բաժանմունքներում, անձամբ ստուգեց բոլոր մեխանիզմներն ու սարքավորումները, տորպեդներն ու էլեկտրամեքենաները։ Նա խրախուսում էր նավաստիներին, և ինչպես բոլոր գրոհներից առաջ, կատակում էր մեզ հետ։*

*Շտուրմանը՝ լեյտենանտ Ցիգանկովը գծում և ինչ-որ կարմիր ու կապույտ կետեր էր նշանակում ծովային քարտեզի վրա։ Մեկ-մեկ նա մոտենում էր շրջադիտակին և դուրս նայում։ Ամենից անհամբերը նա էր։ Արդեն ժամանակն էր, պետք է հանդիպեինք նավաքարավանին, իսկ քարավանը չկար ու չկար։ Երկու ժամ մեր սուզանավը դեգերում էր Սև ծովի թեթև ալեկոծվող ջրերի տակ, սակայն ո՛չ շրջադիտակից էր որևէ բան նկատվում և ոչ էլ ձայնաբանական սարքավորումներն էին որևէ պտուտակի ձայն որսում։ Բոլորս լարված սպասում էինք ճակատամարտին։*

*Բաժանմունքներում օդը ծանր էր։ Արդեն յոթը ժամ էր՝ ջրի տակ էինք և սուզանավում օդը չէր փոխվում։ Սուզանավի խո-*

հարարը՝ որ ամենից մոլի ծխողն էր, ծխափոտը բերանում ծամելով շրջում էր բաժանմունքից բաժանմունք և անընդհատ հայհոյում «ֆրիցներին»՝ ուշանալու համար։

— Մի կում ծխի համար մեր կոկը այսօրվա մեր ամբողջ նախաճաշը կտա,— սրամտում էր տորպեդիստ Նովիկովը,— գրազ կգամ՝ նրա երազը մի կում ծուխն է...

— Ծո՞ւխ...— բացագանչեց շտուրմանը այնպիսի ուժով, որ բոլոր բաժանմունքներում լսվեց։

— Ծո՞ւխ, ծո՞ւխ... նայեցեք, ընկեր հրամանատար, ծո՞ւխ...

— Տեսնում եմ,— հանգիստ պատասխանեց կապիտան-լեյտենանտը, որ շրջադիտակի հետ պտտվում էր առանցքի շուրջը։

Այդ նույն պահին ձայնորս Ժոլոբովը հայտնեց, որ լսում է երեք հուժկու պտուտակի ձայն։

— Հրաշալի՜ է,— բացագանչեց անզուսպ շտուրմանը,— ուրեմն կատերներ չկան։

Հրամանատարն այդ կարծիքին չէր։ Նա հոնքի վարժ ու վարպետ մի շարժումով հասկացրեց, որ այդ դեռևս ոչինչ չի նշանակում։

Արդեն սուզանավը գտնվում էր նավաքարավանից հարմար հեռավորության վրա։ Գրոհելու ժամանակն էր, բայց չգիտես ինչու, հրամանատարը ուշացնում էր գրոհը։ Շտուրմանը, որ շրջադիտակից չէր հեռանում անհամբերությամբ մի քանի անգամ շշնջաց.

— Ժամանակն է։

Հրամանատարը կարծես թե չէր լսում նրան։ Նա շարունակում էր շրջադիտակի հետ պտտվել և տարբեր կողմերից դիտել ծովը։ Միաժամանակ նա ձայնորս Ժոլոբովին հրամայեց ավելի ուշադիր լինել։ Ականջներին հագցրած ձայնաբանական գործիքը, Ժոլոբովը ճագարի պես խլուշտ-խլուշտ էր լինում ամեն մի ձայնից։

— Պատրա՜ստ,— հրամայեց կապիտան-լեյտենանտը։

Բոլորը քարացան տեղերում։ Տորպեդիստները ձեռքները ապարատի բռնակներին՝ կարծես թե արձաններ լինեին։ Նրանք լավ գիտեին, որ իրենց ամենափոքրիկ ուշացումը կարող է անդրադառնալ գրոհի հաջողության վրա։



Ստեղծվեց մի ծայրահեղ լարված դրություն։ Թվում էր, թե առանց այն էլ ջրածնով հագեցած օդը հիմա կբռնկվի։ Բոլորի աչքերում էլ սառած մի հարց կար և բոլորն էլ մի բան էին զգում։

Կապիտան-լեյտենանտ Լունինը, որն իր խիզախությամբ հայտնի էր ամբողջ նավատորմում, վարանում էր գրոհել։ Բոլորն էլ գիտեին, թե ինչ է նշանակում այդ։

Հրամանատարի ուշադրությունը գրավել էր երրորդ փոխադրանավը։ Սովորական աչքը դժվար թե այդ երեք նավերի մեջ որևէ տարբերություն գտներ։ Նրանք բոլորն էլ գրեթե նույն տարողությունն ունեին և նույն նստվածքը ջրում։ Նրանց սիլուետները երկինքի գորշ ֆոնի վրա նման էին իրար, բայց կապիտան-լեյտենանտի հմուտ աչքից չէին վրիպել երրորդ նավի կեղծ լինելու ամենափոքրիկ, աննկատելի նշանները։

— Երրորդը նավաթակարդ է,— ծանր ասաց նա շտուրմանին։

Նավաթակարդը թեթև, արագընթաց ծովային որսորդն է, որին արտաքինից բարակ տախտակով, ծանր, մեծ նստվածք ունեցող փոխադրանավի տեսք է տրվում։ Սուզանավերը խաբվելով դրանից նրա վրա տորպեդներ բաց թողնում, որը սակայն առանց վնասելու անցնում է նավաթակարդի տակով և



Սուզանավը գտնվում էր հարմար հեռավորության վրա...

դրանով միայն մատնում սուզանավի տեղը։

Շտուրմանը լավ գիտեր նավաթակարդների մասին. բայց մինչ այդ նկատի չէր ունեցել փոխադրանավերից մեկը նավաթակարդով փոխարինելու հնարավորությունը։ Նա մտածմունքի մեջ ընկավ։

Բայց մի՞թե կարելի է բաց թողնել գրոհի հնարավորությունը, մի՞թե կարելի է թողնել, որ թշնամին անպատիժ տանի մեր ժողովրդի արդար աշխատանքի արդյունքը։

Հրամանատարը մի պտույտ էլ գործեց շրջադիտակի հետ և հրամայեց կրակել։

Սուզանավն ուժգնորեն ցնցվեց, մի պահ կորցրեց հավասարակշռությունը, բայց այդ ոչ ոքի չէր մտահոգում։ Սուզանավորդները լարված սպասում էին մի ուրիշ բանի։ Եվ ահա լսվեց մի խուլ, ահռելի պայթյուն, նրան հետևեց երկրորդը։ Բոլորի դեմքերը պայծառացան։ Ուրեմն տորպեդները հասել են նպատակակետին, ուրեմն խնդիրը կատարված է։ Հերթափոխից ազատ նավաստիները գրկախառնվում էին, համբուրում իրար։ Բայց այդ ընդհանուր ուրախությունն ընդհատեց ձայնորս Ժուլբովը։ Նա հայտնեց, որ դեպի սուզանավն է գալիս մի արագընթաց կատեր։

Հրամանատարի գուշակությունը ճիշտ դուրս եկավ։ Երրորդ նավը նավաթակարդ էր։ Եվ ահա նա որոնում էր մեր սուզանավի տեղը։ Կապիտան-լեյտենանտը հրամայեց նստել ծովի հատակին և մոտորներն անջատել։ Այդպիսով թշնամին չէր կարողանա մեր տեղը որոշել։

Ութ ժամ մնացինք ծովի հատակին։ Գերմանական նավաթակարդը անընդհատ պտտվում էր վերևում և ռումբեր գցում, որոնք սակայն պայթում էին մեզանից հեռու։ Բայց ահա նավաթակարդը մոտենում է մեզ, ռումբերը պայթում են ավելի մոտ, իսկ նրանցից մի քանիսը պայթեցին ուղղակի մեր շուրջը։ Բոլորը սրտատրոփ, քարացած կանգնել էին։ Բավական է սուզանավը մի փոքրիկ ճեղքվածք ստանար և մեր տեղը հայտնի կլիներ թշնամուն։ Սակայն մենք մոտորներն անջատել էինք ժամանակին։ Նավաթակարդն ինչպես մոտեցել էր, այնպես էլ հեռացավ, շարունակելով իր որոնումները։

Մի երկու ժամ որոնելուց և ռումբեր նետելուց հետո, նավաթակարդը կանգ առավ մեր սուզանավից հարավ և մոտորներն անջատեց։

Գերմանացիների մտադրությունը պարզ էր։ Լավ գիտենալով, որ սուզանավը ջրի տակ առանց օդի երկար դիմանալ չի կարող, նրանք որոշել էին երկար սպասելով ստիպել մեզ անձնատուր լինել։ Սակայն ֆաշիստներն իրենց հաշիվների մեջ սխալվել էին։ Նրանք մոռացել էին ամենակարևորը, որ գործ ունեն սովետական նավաստիների, սովետական սուզանավի հետ։

Գիշերը մենք հանկարծակի վեր բարձրացանք և հրետանային կռվի բռնվելով հանկարծակիի եկած թշնամու հետ՝ գերմանական նավաթակարդը նույնպես խորտակեցինք։

Առավոտյան, երբ վերջրյա դրությամբ մենք ուղևորվում էինք որոնելու գերմանական երրորդ իսկական փոխադրանավը, տեսանք, որ ծովի խաղաղ մակերևույթի վրա սևին են տալիս գերմանական խորտակված նավերի բեկորները։ Տախտակամածի վրա հավաքված նավաստիներին ձայնորս Ժուլբովը իր հերթական անեկդոտներն էր պատմում և սրամտում։



Նրանք բոլորն էլ գրեթե նույն տարողությունն ունեին...

*— Նավաթակարդը թակարդն ընկավ, այն էլ ղուլդ կայմով։*

*Մեր սուզանավը ճեղքելով ծովի կապույտ հարթությունը, շարունակում էր իր մարտական ուղին։ Գերմանական ծովահեններին չհաջողվեց իրենց երկիրը տանել չնաշխարհիկ Ղրիմի հարստությունները, մեր ժողովրդի արդար աշխատանքի արդյունքը։*

*Սովետական խիզախ նավաստիները թույլ չտվեցին ֆաշիստներին հասնելու իրենց նպատակին, որքան էլ այդ ցանկանում էին նրանց հլու թյուրք լրտեսները։*

---

# ՔԱՅԼԵՐԳԻ ՏԱԿ

*Ս. ԽԱՐԱՋՅԱՆ*

Անցնում են ահա լայն փողոցով
Մեր զինվորները քայլերգի տակ,
Շուրջը ծառերն են շրշում նազով,
Ու շնչում ամռան բուրմունքը տաք։
Եվ հետևում են երթին այդ հոծ
Երեխաները մեր ժպտադեմ,
Ահա նրանք էլ ելած փողոց
Շարքերի հետ են քայլում արդեն։
Մեկը վազում է, մեկն ընկնում ետ,
Մեկը գնում է շարքի առաջ,
Ոմանք էլ կարգով շարքերի հետ
Անցնում են, ինչպես զինվորներ քաջ։
Բայց լեյտենանտն է այդ նկատում,
Եվ ասում նրանց՝— Դե՛, փոքրիկնե՛ր,
Հեռացեք շարքից, գնացեք տուն
Եվ սովորեցեք դասերը ձեր։
Հո ձեզ չե՞ն կանչել ծառայելու,
Եկել քայլում եք մարտիկի պես.
Ձեզնից այդ օրը շատ է հեռու,
Եվ գուցե հերթը չի հասնի ձեզ։

---




(Պիես մեկ գործողությամբ)

*ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ*

*Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ*

**Գործող անձեր**

ՍԵՐԻԿ— *ջոկատավար, կոմերիտմիի.*
ԱՇՈՏ— *ջոկատի խորհրդի նախագահ.*
ԳԱԼՈՒՍՏ, ՌՈՒԶԱՆՆԱ, ՍԱՔՈ — *օղակավարներ.*
ԱԶԱՏ, ՄԱՄԻԿ — *պիոներներ.*

Ճամբարի խորհրդի սենյակը։ Սեղան, տաբուրետկաներ. պատի մոտ՝ նստարան։ Սեղանի վրա՝ գրքեր, մատիտներ, բանաձաման։ Պատերը զարդարված են պլակատներով, պորտրեներով, քարտեզներով։

Աշոտը, Գալուստը, Ռուզաննան ու Սաֆոն նստած են սեղանի շուրջը։ Սերիկը կանգնած է։

ՍԵՐԻԿ.— (մտահոգված) *Ես ձեզ կանչել եմ, ընկերնե՛ր, որ հաղորդեմ մեր ճամբարում տեղի ունեցած արտակարգ դեպքի մասին։* (Բոլորը ուշադրությունները լարում են)։ *Հենց նոր այստեղ էր Եփրեմ պապին...*

ՌՈՒԶԱՆՆԱ.— *Ի՞նչ Եփրեմ պապի...*

ԱՇՈՏ.— *Այգու պահակը։*

ՍԵՐԻԿ.— *Այո, Գիտությունների ակադեմիայի այգու պահակը։ Եփրեմ պապին պատմեց, որ մեր տղաներից մեկը մտել է այգին և նույնիսկ փչացրել է փորձնական դեղձի տնկիները։ Տնկիները կարելի է բուժել. բայց դա ոչինչ չի նշանակում...*

ՍԱՔՈ.— *Իսկ այդ ո՞վ է եղել։*

ՍԵՐԻԿ.— *Ծերունին չգիտի, թե ով է եղել։ Տղան պահակին նկատել է թե չէ՝ փախել է։ Եփրեմ պապին տեսել է, որ տղան վզկապ չունի. բայց ցանկապատի վրայով անցնելու ժամանակ, նրա գրպանից մի վզկապ է ընկել։*

ՌՈՒԶԱՆՆԱ.— *Գուցե ուրիշ ճամբարի՞ց է եղել։*

ՍԵՐԻԿ.— *Ո՛չ։ Պապին տեսել է, որ տղան մեր ճամբարի կողմն է վազել։*

ԳԱԼՈՒՍՏ.— *Իսկ վզկա՞պը։*

ՍԵՐԻԿ.— *Հենց բանն էլ այն է, որ վզկապը մնացել է Եփրեմ պապիկի մոտ։ Նա վզկապն ինձ չավեց ու խնդրեց, որ մեղավորին գտնենք։*

ԱՇՈՏ.— *Այդ դեպքում... ինչ դժվար բան է, որ։ Տղանի կշարենք և կստուգենք, թե ով վզկապ չունի։*

ՍԵՐԻԿ.— *Ես էլ եմ կարծում, որ պետք է ստուգել. բայց տողանի կարիք չկա։ Թող ամեն մեկը ստուգի իր օղակում։*

ԱՇՈՏ.— (ոտքի կանգնելով) *Ընկեր օղակավարնե՛ր, գնացեք, ստուգեցեք և զեկուցեցեք* (նստում է)։

Գալուստը, Ռուզաննան ու Սաֆոն գնում են։ Սերիկը նստում է Աշոտի կողքին։

ՍԵՐԻԿ.— *Անախորժ պատմություն է։ Իսկ ես այսօր մտածում էի, որ լավ կլինի, եթե մեր ճամբարը վերցնի Ակադեմիայի այգու շեֆությունը։ Ե՛վ մոտիկ է, և՛ որոշ գործերում կարող ենք օգնել. պիոներներն էլ հետաքրքիր շատ բան կիմանան։ Իսկ հիմա՝ էլ ի՞նչ շեֆություն, երբ իրենք շեֆերն են տնկիները փչացնում։*

ԱՇՈՏ.— *Ես հույս ունեմ, որ այս բոլորը թյուրիմացություն է։ Մեր երեխաներն այդպիսիները չեն։ Եփրեմ պապին ինչ-որ բան շփոթել է։ Ծեր է նա, չէ՞...*

ՍԵՐԻԿ.— *Նա հո չի խաբի։* (Ներս է մտնում Ռուզաննան)։

ՌՈՒԶԱՆՆԱ.— (սալյուտ է տալիս և դիմում է Աշոտին, որը ոտքի է կանգնում և նույնպես սալյուտ է տալիս)։ *Ընկեր ջոկխորհրդի նախագա՛հ, երկրորդ օղակի բոլոր պիոներները վզկապներով են։ Զեկուցեց օղակավարուհի Ռուզաննա Պապիկյանը։*

Ռուզաննան մի կողմ է քաշվում։ Ներս է վազում Սաֆոն։ Նա սալյուտ է տալիս Աշոտին։ Աշոտը պատասխանում է։

ՍԱՔՈ.— (ձայնը շնչելով և ուրախ) *Ընկեր ջոկխորհրդի նախագա՛հ, մեր... երրորդ օղակի բոլոր պիոներները վզկապներ ունեն։ Զեկուցեց օղակավար Սաքո Վարդանյանը։*

Սաֆոն մի կողմ է քաշվում և կանգնում է Ռուզաննայի մոտ։ Գլխիկոր ներս է մտնում Գալուստը։ Նա դանդաղորեն սալյուտ է տալիս։ Աշոտը պատասխանում է։

ԳԱԼՈՒՍՏ.— (ակամա) *Ընկե՛ր ջոկխորհրդի նախագահ, առաջին օղակի բոլոր պիոներները վզկապներով են, բացի Ազատից...*

ՍԵՐԻԿ.— *Ազատի՞ց...*

Բոլորը շփոթված ու զարմացած իրար են նայում։

ԳԱԼՈՒՍՏ.— (ցածրաձայն) *Հա՜... Ինքս էլ ոչինչ չեմ հասկանում. բայց Ազատն առանց վզկապի է։*

ԱՇՈՏ.— (դիմելով Սերիկին ու սալյուտ տալով) *Ընկեր ջոկատավա՛ր, ջոկատում...*

ՍԵՐԻԿ.— (ընդհատելով ու ձեռքը թափահարելով) *Հարկավոր չի, հարկավոր չի... Ինչպե՞ս կարող էր պատահել... Իսկ ես հայտարարել եմ, որ այսօր խարույկը Ազատը կվառի... որպես ճամբարի ամենակարգապահ պիոներ...* (Գալուստին)։ *Իսկ նա ինքն ի՞նչ է ասում, ո՞րտեղ է վզկապը։*

ԳԱԼՈՒՍՏ.— *Ասում է «Չգիտեմ՝ որտեղ է»։*

ԱՇՈՏ.— *Ինչպե՞ս թե չգիտի։*



ՍԵՐԻԿ.— (խստորեն) *Հենց հիմա կանչիր նրան ինձ մոտ։*

Գալուստը գնում է։ Բոլորը լարված սպասում են։ Գալուստը վերադառնում է Ազատի հետ միասին։ Ազատն առանց վզկապի է։

ՍԵՐԻԿ.— *Այդ արդեն քեզանից չէի սպասում, Ազա՛տ։ Այդ ի՞նչպես է պատահել, ախր։*

ԱԶԱՏ.— (ոչ միանգամից, շփոթված) *Չգիտեմ։*

ՍԵՐԻԿ.— *Ի՞նչ չգիտես։*

ԱԶԱՏ.— *Չգիտեմ, թե վզկապս ուր է կորել. չեմ հիշում։*

ՍԵՐԻԿ.— *Իսկ ես գիտեմ. քո վզկապը Ակադեմիայի այգու պահակի մոտ է։*

ԱԶԱՏ.— (զարմացած) *Ինչո՞ւ։*

ՍԵՐԻԿ.— *Մի՞թե դու այդ չգիտես. մի լավ մտածիր, գուցե կհիշես։*

ԱԶԱՏ.— (շտապ) *Իսկ ի՞նչ պիտի հիշեմ, ես ոչինչ չեմ հասկանում։*

ՍԵՐԻԿ.— *Գուցե կորցրել ես Ակադեմիայի այգում, մի լավ հիշիր։*

ԱԶԱՏ.— (Գլուխը կախած. ցածրաձայն) *Ի՞նչ այգի, ինչո՞ւ պիտի կորցնեի այնտեղ։*

ԱՇՈՏ.— *Բա քո վզկապն ո՞ւր է։*

ԱԶԱՏ.— *Չգիտեմ։*

ՍԵՐԻԿ.— *Քեզանից բացի բոլորը գիտեն։ Հասկացիր, որ համառելով դու քո մեղքն ես ծանրացնում։* (Մյուսներին) *Գնանք, ընկերնե՛ր, ձեզ հետ գործ ունեմ։* (Ազատին) *Իսկ դու, Ազա՛տ, մի լավ մտածիր. երբ դու կորոշես ասել ճշմարտությունը, արի ինձ մոտ ու պատմիր ամեն ինչ, պատմիր ինչպես որ եղել է։*

Ազատից բացի բոլորը գնում են։ Ազատը նստում է տաբուրետկային, ձեռքերը հենում է սեղանին ու գլուխը առնում նրանց մեջ։ Գաղտագողի մտնում է Մամիկը։

ՄԱՄԻԿ.— (շշուկով) *Ազա՛տ։*

ԱԶԱՏ.—(գլուխը բարձրացնելով) *Ի՞նչ է։*

ՄԱՄԻԿ.— *Նրանք այգու մասի՞ն էին խոսում։ Ես տեսա, որ պահակը ճամբար եկավ։*

ԱԶԱՏ.— *Այո։ Բոլորն ասում են, թե իբր ես այգի եմ մտել։*

ՄԱՄԻԿ.— (հուզված) *Ազա՛տ, սիրելի՛ս։ Ես քեզ մի բան եմ ուզում ասել։ Գիտե՞ս ինչ։ Դե՞, հասկանո՞ւմ ես... Դե լավ, առ վզկապը։* (Ուզում է հանել իր վզկապը)։

ԱԶԱՏ.— (տեղից ցատկում է և բռնում է Մամիկի ձեռքը) *Ի՞նչ ես անում, ի՞նչ ես անում, Մամի՛կ, ինչո՞ւ։ Չեմ ուզում։*

ՄԱՄԻԿ.— (համոզում է) *Ոչի՛նչ, ոչի՛նչ, այդպես է պետք։*

ԱԶԱՏ.— *Չէ՛, չէ՛։*

ՄԱՄԻԿ.— *Է՜հ, դու ոչինչ չես հասկանում։*

ԱԶԱՏ.— *Շատ լավ էլ հասկանում եմ, բայց չեմ ուզում, որ հիմա էլ քո մասին վատ բան մտածեն։ Ի՞նչ կարիք կա։ Շնորհակալ եմ, Մամի՛կ ջան, բայց... չէ, չեմ ուզում։*

ՄԱՄԻԿ.— *Դե, չէ... Թող իմ մասին խոսեն... Ոչ ոք էլ ոչինչ չի ասի, է՜։*

ԱԶԱՏ.— *Ոչինչ չեմ հասկանում։*

ՄԱՄԻԿ.— *Է՜հ... Դե՜, ախր... այդ ես եմ մտել այգին։*

ԱԶԱՏ.— *Դո՞ւ։*

ՄԱՄԻԿ.— *Իհարկե։ Այդ իմ վզկապն է մնացել պահակի մոտ։*

ԱԶԱՏ.— *Այ քեզ բա՜ն։ Ախր դու ինչո՞ւ մտար։ Եվ այդ ո՞ւմ վզկապն է քեզ մոտ։*

ՄԱՄԻԿ.— (շփոթված) *Քո։*

ԱԶԱՏ.— *Ինչպե՞ս թե՝ իմ։*

ՄԱՄԻԿ.— *Դե... հասկանում ես, իմ վզկապը այգում մնաց... Իսկ երբ Գալուստը օղակը հավաքեց, ես սեղանի վրա մի վզկապ տեսա, առա ու կապեցի... Ես չգիտեի, որ դա քոնն է։ Ես տեսա, որ շարքում դու առանց վզկապի էիր, բայց չհամարձակվեցի ասել, որ քո վզկապն ինձ մոտ է։ Ազա՛տ ջան, դու ինձ վրա մի՛ բարկանա։* (Ազատը լուռ է) *Գիտե՞ս ես արդեն հնարը գտել եմ. ամեն ինչ կարելի է ուղղել։*

ԱԶԱՏ.— (ուրախ) *Իհարկե, կարելի է։ Դու կգնաս ու ընկեր Սերիկին ամեն ինչ կխոստովանես։*

ՄԱՄԻԿ.—*Ո՛չ, ո՛չ, ո՛չ։ Ոչ մի դեպքում։ Տարօրինակ մարդ ես դու։ Ինչո՞ւ այդպես։ Մենք ուրիշ ձևով կանենք։ Դու կկապես քո վզկապը և կասես, որ գտել ես։ Ես մի ուրիշն էլ ունեմ՝ կկապեմ ու բոլորն էլ կկարծեն, թե ուրիշ ճամբարի պիոներ է մտել այգին։ Լավ եմ մտածել, չէ՞։*

ԱԶԱՏ.— *Սպասիր, սպասի՜ր։ Դա պիոների վարմունք չի լինի, չէ՛։ Դուրս կգա, որ ընկեր Սերիկին էլ կխաբենք, մնացած բոլորին էլ. իսկ քո վզկապը այդպես էլ կմնա պահակի մոտ։ Չէ՜... Ես համաձայն չեմ։ Ես իմ վզկապն այդպես չեմ վերցնի։ Այո՛, այո՛, չեմ վերցնի, մինչև որ դու ամեն ինչ չխոստովանես։*

ՄԱՄԻԿ.— *Ա՛յ քեզ մարդ։ Ո՞նց չես հասկանում, է՜։ Ախր ասում եմ, որ ես կկապեմ իմ մյուս վզկապը, և ամեն ինչ լավ կվերջանա։ Իսկ այն վզկապը թող մնա պահակի մոտ, ի՞նչ կա որ. ես չեմ ափսոսում։*

ԱԶԱՏ.— *Ո՛չ, դու պետք է խոստովանես կամ...*

ՄԱՄԻԿ.— (ընդհատելով) *Ի՞նչ կամ։ Կգնաս ու կմատնե՞ս։ Ինչպես ուզում ես... Առ քո վզկապը, իսկ ես իմ մյուս վզկապը կկապեմ։ Դու որ մատնես, ոչ ոք չի հավատա։ Ապացույցներ չկան, որ ես եմ մտել այգի ու իմ վզկապն է մնացել պահակի մոտ... Իզուր էլ ամեն ինչ ասացի քեզ* (ձեռքը գցում է վզկապին)։

Ներս է մտնում Գալուստը։ Մամիկը չի հասցնում հանել վզկապը։

ԳԱԼՈՒՍՏ.— (Ազատին) *Տեսա՞ր ինչ արեցիր։ Ընկեր Սերիկը հիմա ասաց, որ իր որոշումը փոխել է. որ մեզ ես զրկել, ուրեմն խարույկը չես վառի։* (Ազատը գլուխը կախում է ու լռում)։

ՄԱՄԻԿ.— (իրեն կորցրած) *Ինչո՞ւ նա չի վառի։*

ԳԱԼՈՒՍՏ.— *Որովհետև նա այսօր կարգապահությունը խախտել է։ Իսկ խարույկ վառելը Սերիկը քեզ է հանձնարարում։*

ՄԱՄԻԿ.— (զարմացած) *Ի՞նձ. ինչո՞ւ հատկապես ինձ* (շփոթվում է) *Ոչ, ոչ, միայն թե ոչ ինձ։ Ինչո՞ւ ինձ։ Ես չեմ վառի* (նայում է Ազատին)։

Ազատը մնում է կանգնած լուռ և գլխիկոր։

ԳԱԼՈՒՍՏ.— *Ինչո՞ւ։ Չէ՞ որ նա խարույկ վառելը հանձնարարում է կարգապահ պիոներներից որևէ մեկին։* (Շուռ է գալիս, ուզում է գնալ)։

ՄԱՄԻԿ.— (նայում է մեկ Ազատին, մեկ Գալուստին, հետո վճռականորեն գոչում է). *Գալո՛ւստ, Գալո՛ւստ, սպասի՛ր։* (Ազատը լարում է ուշադրությունը)։



ԳԱԼՈՒՍՏ.— (կանգ է առնում և նայում է նրան) Ի՞նչ է, ի՞նչ կա։

ՄԱՄԻԿ.— (անվստահ) Գալո՛ւստ ջան, ես խարույկը վառել չեմ ուզում։ Ավելի լավ է, թող Ազատը վառի։

ԳԱԼՈՒՍՏ.— Ինչո՞ւ։ Ես պարզ եմ ասում, չէ՞. Ազատն այսօր հանցանք է գործել, նա մտել է Ակադեմիայի այգին, դրա համար էլ պատժվում է։ Համարձակություն էլ չունի, որ խոստովանի (ուզում է գնալ):

ՄԱՄԻԿ.— (վճռականորեն) Ո՛չ, ո՛չ, սպասիր, Գալո՛ւստ։ Ես չեմ վառի խարույկը։ Այդ... ես եմ մտել այգին։ Այդ ես եմ կորցրել վզկապը։ Ես կապել եմ Ազատի վզկապը։

ԳԱԼՈՒՍՏ.— (կանգ առնելով և զարմացած) Այ քեզ բա՜ն... Բայց ինչպե՞ս կարող էր Ազատն իր վզկապը քեզ տալ։

ՄԱՄԻԿ.— Ես ինքս եմ վերցրել. նա չգիտի էլ։

ԳԱԼՈՒՍՏ.— Հիմա հասկանում եմ։ Լավ է, որ դու գոնե խոստովանեցիր։ Թե չէ քո պատճառով ընկերդ պետք է տուժեր։ Հենց հիմա ամեն ինչ պետք է պատմել ընկեր Սերիկին։

ՍԵՐԻԿ.— (ներս է մտնում Աշոտի հետ) Ի՞նչ պետք է պատմել։ (Բոլորը լռում են):

ՄԱՄԻԿ.— (ամաչելով) Թող Ազատը պատմի։

ԱԶԱՏ.— Ինչո՞ւ ես. դու ինքդ պետք է պատմես։

ՄԱՄԻԿ.— (շտապ) Դե լավ։ Այդ ես եմ մտել այգին. իսկ հետո Ազատի վզկապն եմ կապել... առանց իրեն հարցնելու...

ՍԵՐԻԿ.— Ահա թե ի՜նչ։ Եվ դու մինչև հիմա լռում ես, հա՞։

ԱՇՈՏ.— Իսկ դու, Ազա՛տ, մի՞թե չգիտեիր այդ բոլորի մասին։ Ինչո՞ւ չէիր ասում։

ԱԶԱՏ.— Որովհետև Մամիկն ինքն է ուզում խոստովանել։

ՄԱՄԻԿ.— Հը՞, խարույկն Ազա՞տը կվառի։

ՍԵՐԻԿ.— Երբ ամեն ինչ այդպես ստացվեց, իհարկե, նա կվառի։ Չէ՞ որ դու ինքդ ես ասում, թե նա մեղավոր չէ։

ՄԱՄԻԿ.— (ուրախացած) Իհարկե, մեղավոր չի։ Հիմա ես կարո՞ղ եմ գնալ և Եփրեմ պապիկից ներողություն խնդրել։

ՍԵՐԻԿ.— Գնա, իհարկե. բայց ինչ էլ լինի՝ քո հարցը ջոկատի խորհրդում կքննենք։ Հաշվի կառնենք, իհարկե, որ դու ինքդ խոստովանեցիր։

ՄԱՄԻԿ.— Լավ, գնամ Եփրեմ պապիկի մոտ ու ներողություն խնդրեմ...

Արագ հանում է վզկապը, տալիս է Ազատին ու գլխահակ դուրս գնում: Բոլորը նայում են նրա հետևից:

Վ ա ր ա գ ո ւ յ ր

# ՄԵՐ ՊԱՐՏԵԶԸ

ԱՆԺԵԼԱ ՄԻՆԱՍՅԱՆ

Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



Իմ սայլակով բեռնատար
Կրում եմ ես հող ու քար:
Պարտեզը մեր ծառազարդ
Ցանկապատում եմ զվարթ,
Որ ուլիկներ ու սազեր,
Եվ խոզուկներ շատակեր՝
Ցանկապատից ներս չանցնեն
Ծառ ու ծաղիկ փչացնեն.
Որ աշունը ոսկեհեր
Լինի հարուստ, բարեբեր,
Որ մրգերը հյութալի
Առատ լինեն այս տարի:



Նոր ճանապարհ Հրազդանի ձորում:

Լուսանկարը՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

## ՀՐԱԶԴԱՆԻ ԱՓԻՆ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Տեսե՞լ եք դուք ափերը նոր
Հրազդանի մեր դարավոր.
Ինքն այնքան մի ծերունի,
Բայց ի՜նչ կանաչ ափեր ունի.
Ի՜նչ նոր ծառեր հասակ առած.
Ապառաժը՝ կանաչ դառած,
Ժայռի վրա վարդն է բացվել,
Առավոտյան շաղով բացվել:
Լցվել է ձորն անուշ բույրով,
Մանկական վառ ժպիտներով.
Երգն ու ծիծաղն են զրնգում
Շահումյանի նոր պուրակում:
Երկու կողմից վարար գետի,
Ինչպես երկար ձգված գոտի,
Անցնում է նոր, ասֆալտապատ
Ճանապարհը, որն անընդհատ
Գնում, հասնում է խոր ձորի
Կամուրջը նոր ու վիթխարի։
Խնդությունից այս բևավոր
Հրազդանն էլ ասես թե նոր
Ույժ ստացած, փրփուր դարձած
Ջով, կենսաբեր գիրկը բացած
Ալիքվում է, համբույր տալիս.
Ամեն մի նոր շյուղ տեսնելիս,
Ամեն մի նոր ճամփի վրա
Զգում ենք բարմ շունչը նրա:
Ահա այնտեղ, ուր մանկական
Երկաթուղու կայանն այնքա՜ն
Ուղևորներ է ընդունում,
Գնացքն անվերջ գալիս-գնում,
Հասնում է նոր ավազանին
Լցված ջրով Հրազդանի:
Երգերից է ձորը թնդում,
Կյանքն է այստեղ ուրախ, խնդուն:
Դրանից էլ այդ կայանին
Հենց «Խնդություն» անուն տվին:
Իսկ դեռ որքա՜ն շքեղատես
Նոր պուրակներ պայծառ այսպես,
Նոր կոթողներ ենք կառուցում,
Ե՛վ աշխատում, և՛ մտածում
Վաղվա մասին՝ մեր գալիքի,
Երջանկության ու մեր կյանքի:

# ՆՎԵՐԸ

ՊԵՐՃ ՋԵՅԹՈՒՆՑՅԱՆ
(63-րդ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Մահմուդը սիրիացի գյուղացիներից էր. երկարահասակ, լայնաթիկունք, սև մազերով և սև բեղերով մի տղամարդ: Նա աշխատել էր գյուղի կալվածատիրոջ մոտ որպես այգի ջրող:

Մի ամիս առաջ կալվածատերը աշխատավարձն ուշացրել էր, իսկ Մահմուդը փողի կարոտ լինելով, բողոքել էր և պահանջել վարձը: Տերը զայրացել էր նրա հանդգնության վրա և նրան ազատել էր աշխատանքից: Այսպես անգործ, ամեն օր թափառում էր նա գյուղի ծուռումուռ և ցեխոտ փողոցներով, կամ նստում էր իրենց տան դիմացի քարին ու չիբուխ ծխում:

Մի առավոտ, սովորականի պես նա դուրս եկավ տնից և նստեց քարի վրա: Մոտակա ծառը ստվեր էր գցել շուրջը: Մահմուդը չիբուխը լցրեց և սկսեց ծխել: Նա մտածկոտ հայացքով նայում էր տան կողմը, որտեղ խաղում էին իր երկու փոքրիկ, նիհար և գունատ երեխաները:



... Մահմուդը հաճախ էր Կառլոյին տեսնում բազկաթոռի մեջ նստած:

Այդ տունը միհարկանի էր, երկու փոքրիկ լուսամուտներով և կենտրոնում կեղտոտ մի բացվածքով, որը ծառայում էր որպես դուռ: Մահմուդի առօրյա խնայողությամբ պահած փողերը վերջանում էին. տան դռանը շուտով չոքելու էր սովը: Ոչ որ այլևս նրան պարտք չէր տա: Եկավ նրա շունը, նստեց գետնին, և տիրոջը նայեց այնպիսի տխուր աչքերով, կարծես ցանկանում էր նրան կարեկցել:

«Երանելի՜ արարած,— մտածեց Մահմուդը շան մասին,— հոգս չունես, և ուտում ես այն, ինչ որ տերդ է տալիս, կամ ինչ-որ պատահաբար գտնում ես»: Նա ձանձրացավ նստելուց և շան հետ միասին գնաց դեպի մոտակա Եփրատ գետը:

Նախքան գետափ հասնելը, Մահմուդն անցավ գյուղի միակ ասֆալտապատ փողոցով, որտեղ գտնվում էր երկհարկանի, լուսավոր և ներկված մի տուն: Դա ֆրանսիացի պարետ Կառլոյի տունն էր. նրա ընդարձակ պատշգամբի մոտով անցնելիս՝ Մահմուդը հաճախ էր Կառլոյին տեսնում բազկաթոռի մեջ նստած: Սակայն այդ օրը նա չկար:

Մահմուդը նայեց նրա տան կողմը և մտածեց. «Ի՞նչ կպակասի այս մարդուն, եթե նա ինձ իր կալվածքներից որևէ մեկում աշխատանք տա, չէ՞ որ նրա նման ես էլ հայր եմ, ես էլ եմ ուզում կուշտ տեսնել ընտանիքիս»:

Շարունակելով ճամփան նա հասավ գետափ: Եփրատի ջրերը մերթ իրար էին բախվում, մերթ շարունակում իրենց ճամփան, երբեմն էլ քարերի վրայից թռչելով խուլ աղմուկ էին հանում. կարծես անհավասար պայքարի մեջ էին: Թվում էր, թե ալիքների մի մասը մյուս մասին էր հետապնդում, բայց թե ո՞րն էր հետապնդողը, և որը նահանջողը, չէր կարելի գուշակել, որովհետև ամենուրեք նույն պատկերն էր. և նահանջողն էր առջևինին հետապնդում, և հետապնդողն էր հետևինից նահանջում:

Եփրատի ափին, գետնի վրա նա նկա-

տեց Կարլոյին: Պարետը մի քարի վրայից ցատկեց ջուրը և սկսեց անվարժ կերպով լողալ: Մահմուդը ուշք չդարձրեց նրա վրա, քայլեց առաջ: Մի քիչ գնալուց հետո մի ձայն լսելով, նա ետ նայեց և տեսավ, որ Կարլոն չկա, ջրի վրա երևում էր միայն նրա սպիտակ, փափլիկ ձեռքը:

«Խեղդվում է»—անցավ Մահմուդի մտքով: Նա այնքան էլ ուժեղ չէր և լավ լողալ չգիտեր, բայց հակառակ դրան, հանվեց: Նա մարդ էր ազատելու, թեկուզ դա մի պարետ լիներ: Թշվառ ու օգնության կարոտ այդ գյուղացին լավ էր հասկանում մի այլ օգնություն խնդրողի վիճակը: Երբ ոտքը դրեց ջրի մեջ, սառնություն զգաց: Եփրատի ալիքները նրան ավելի ահարկու թվացին:

Մահմուդը մեծ թափով սկսեց լողալ դեպի առաջ: Սպիտակ և փափլիկ ձեռքը գնալով սուզվում էր. բայց ահա Մահմուդը բռնեց այդ ձեռքը և ուժգին քաշեց վերև: Պարետի կլոր, հպարտ և միշտ հեգնող դեմքը վախից կուչ էր եկել և խեղճացել:

Նրանք ափ դուրս եկան: Պարետը շնորհակալություն հայտնեց:

— Վաղը եկ ինձ մոտ վարձդ ստանալու:

Այդ րոպեին Մահմուդը նոր միայն գլխի ընկավ, թե կարող է վարձատրություն ստանալ և վերադարձավ անսահման ուրախությամբ: Ո՞վ գիտե, վաղը ի՞նչ պարգևներ էին իրեն սպասում: Վերջապես միջոց գտնվեց մի քանի ամսվա և գուցե տարիների ապրուստի համար:

«Եկ մի բան խնդրեմ,— մտածեց Մահմուդը,— ինձ պարգև պետք չէ, աշխատանք է պետք, թող ինձ աշխատանքի դնի»:

Ընտանիքը հավաքվեց սեղանի շուրջը և սկսեցին թեյել: Այդ օրը տանը աշխուժություն էր տիրում: Երեխաները վերջին շրջանում առաջին անգամ էին իրենց հորը այդպես ուրախ տեսնում: Մահմուդը նրանց հետ կատակներ էր անում և հեքիաթ պատմում: Քնելու ժամանակ երեխաներին համբուրեց:

Ողջ գիշեր Մահմուդը քնել չկարողացավ և սկսեց մտածել, թե ինչպես պիտի աշխատի, որ բոլորի աչքում լավ երևա, որովհետև այդ բոլորը ընտանիքին օգուտ կարող էր բերել՝ նրան այլևս չէին հեռացնի աշխատանքից: Իրեն շատ պարտավորված էր



...տխուր դեմքով ներս մտավ Մահմուդը:

զգում. նա հայր էր և ընտանիքի ապահովությունը նրանից էր կախված, իսկ եթե մեռներ, կկործանվեր նաև ընտանիքը:

Կարլոն նույնպես հայր էր, իսկ Մահմուդը նրա երեխաներին փրկել էր որբությունից:

«Ո՞վ կարող էր մտածել,— անկողնում ինքն իրեն խոսեց նա,— որ Կարլոն գերեզմանոցում լինելու փոխարեն, այժմ ողջ և առողջ է և իր կյանքով պարտական է ինձ»:

Առավոտյան դեմ Մահմուդը վերջապես քնեց, իսկ ժամը 12-ին գնաց Կարլոյի տունը: Պարետի ծառան արհամարհանքով ընդունեց Մահմուդին և կարգադրեց, որ նա նստի և սպասի տիրոջը:

Կես ժամի չափ սպասելուց հետո, դռներում վերջապես երևաց Կարլոյի կարճ հասակը՝ կլոր դեմքով և նույն հեգնական ժպիտով: Նա իր հետ բերեց թղթե մի կապոց և մեկնեց Մահմուդին՝ ասելով.

— Վերցրու, սրանք հին շորերս են, կհագնես:

*Նրա բերանից ժլատությամբ դուրս եկավ մի քանի խոսք և ապա արագ կերպով հեռացավ, այնպես, որ Մահմուդի համար նրա հետ խոսելու ոչ մի առիթ չստեղծվեց։*

*Տանը բոլորը ուրախ և անհամբեր սպասում էին նրան։ Տնեցիների համար ամեն մի րոպեն մի ժամ էր, և նրանց թվաց, թե Մահմուդը ուշացավ։*

*— Անպայման ճաշի են նստեցրել կամ արդեն աշխատանքի է,— ուրախ ասաց մայրը։*

*Մի քանի րոպե հետո դուռը դանդաղ բացվեց և նույն տխուր դեմքով ներս մտավ Մահմուդը։ Առանց մի բառ ասելու, նա կապոցը դրեց գետնին և դուրս եկավ տնից։ Նա նստեց քարի վրա, լցրեց չիբուխը և պատրաստվեց ծխելու։*

---

# ԱՆՇԵՋ ԿՐԱԿՆԵՐԻ ԿՂԶԻՆ

*Ս. ԱՅՎԱԶՅԱՆ*

Նավակն Իլյիչի ծովախորշից դուրս գալով, ուղղություն ընդունեց դեպի Անշեջ կրակների կղզին։ Երկրաբանական հետախուզությունը պարզել է, որ այդ կղզում և նրա շրջապատում՝ ծովի ընդերքում նավթի առատ պաշար կա։ Եվ ահա հորափոր վարպետ Բագրատ Բալայանի երիտասարդական բրիգադան գնում է այնտեղ աշխատելու։

Բալայանի բրիգադայում այդ օրը երկու հոգի էին ընդունվել։ Դրանք արհեստագործական ուսումնարանը հենց նոր ավարտած երիտասարդներ էին, որոնք խնդրել էին իրենց ուղարկել ծովային հորափորման բրիգադայում աշխատելու։ Այդ երիտասարդները նստել էին նավակի առաջամասում՝ ուռենու շիվերից հյուսած նստարանի վրա և վիճում էին ինչ-որ հարցի շուրջը։ Վարպետ Բագրատը նկատելով, որ տղաները վիճում են, մոտեցավ նրանց.

— Ի՞նչպես եք զգում ձեզ,— դիմելով Ալուն ու Արամին հարցրեց նա։

— Ինչպես ձուկը ծովում,— վրա բերեց Ալին։— Վարպե՛տ, դու եղե՞լ ես Անշեջ կրակների կղզում։

— Երեք օր առաջ այնտեղ էի։

— Արամը պնդում է, որ այդ կղզին անտառապատ է ու կանաչ հովիտներ կան։ Իսկ ես ասում եմ՝ չոր և բուսականությունից զուրկ տեղ է։

— Դու, իհարկե, ճիշտ ես ասում. բայց այդ կղզում ուրիշ հետաքրքիր բաներ կան։ Դուք այնտեղ կտեսնեք զանազան ծովային թռչուններ, իսկ որ ամենից հետաքրքիրն է՝ անշեջ կրակները։

— Անշեջ կրակնե՞րը,— զարմացած հարցրին տղաները։

Հենց այդ ժամանակ էլ նավը երկար սուլեց ու քիչ հետո խարիսխ գցեց կղզու ափին։

***

Արևը դուրս եկավ ծովից, ասես ծովի ջրերում թարմացած։ Արևի ծագման հետ հորափորման բրիգադայի առաջին հերթը անցավ աշխատանքի։ Ռոտորի*) ձայնից կղզու բոլոր թռչունները երկինք բարձրացան։ Վերխովոյ**) Արամը բուրգի գագաթից տեսնում էր ամբողջ կղզին։ Դա փոքրիկ, ավազոտ մի տարածություն էր։ Այդ ավազուտում, այստեղ-այնտեղ հազիվ կանաչին էին տալիս փշախոտի թփերը։ Թռչունների անհանգիստ երամները իջնում էին թփերի շուրջը և իսկույն բարձրանում, պտտվում բուրգի վրա։ Արամը նկատում էր, թե ինչպես մեծագլուխ ճայերը աշխատող մարդկանց մոտից տագնապալից ետ էին դառնում դեպի իրենց բները։ Սակայն ճայերը շուտ ընտելացան կղզու անսովոր աղմուկին, հեռացան բուրգից, իսկ մյուս թռչունները դեռ շարունակում էին թափահարել թևերը, աղմկել անհանգիստ։

Ալին, որ չափիչ գործիքների մոտ հսկում էր ռոտորի արագությունը, հնարավորություն չուներ մի րոպե անգամ բուրգից դուրս գալու։ Նա տեսավ, որ Արամը երբեմն տարվելով թռչուններով ու շրջապատով, մոռանում է աշխատանքը, բարձրաձայն գոռաց նրա վրա։

— Է՛յ, ի՞նչ ես տարվել... Խողովակը միացրու վերտլյուգին***)։

Արամը ծիծաղեց, ձեռքերով հասկացրեց Ալուն, որ շատ հետաքրքիր է բուրգի գագաթից նայել ծովին, կղզուն։ Հետո հասկացրեց, որ երբ ցանկանա, կարող է ծանրաշարժ բադերից մեկին թռչելու ժամանակ բռնել։

Ալին ուսերը վեր քաշեց։ Նա էլ ձեռքերով հասկացրեց, որ շուտով հերթափոխություն կլինի և ինքն էլ հնարավորություն կունենա կղզին ման գալու։

---

**) Ռոտոր— փորող մեքենա։*

***) Վերխովոյ— վիշկայի գագաթից փորման աշխատանքները ղեկավարող։*

****) Վերտլյուգ— փորման գործիք։*

Հետո հարցրեց, թե չե՞ն երևում արդյոք անշեջ կրակները: Արամը գլուխն օրորեց:

Հերթափոխությունը եղավ, բայց չկատարվեց Ալու և Արամի ցանկությունը:

— Երբ մութն ընկնի, ման կգանք,—ասաց վարպետ Բագրատը,— մթության մեջ հետաքրքիր են անշեջ կրակները: Իսկ հիմա դուք պետք է փայտ ջարդեք, կրակ վառեք, ես էլ կերակուր պատրաստեմ:

— Իսկ ինչո՞ւ փայտով կրակ անել, երբ «հավերժական կրակները» կան,— հարցրեց Ալին:

— Իսկապես, վարպե՛տ, էլ ինչո՞ւ չարչարվել, ծուխ կուլ տալ,— նեղացած ձայնով խոսեց Արամը:

— Տղե՛րք, դուք ճիշտ եք ասում, բայց այդ կրակները թռչում են: Այդ կրակները բռնելու և օգտագործելու համար պետք է անհրաժեշտ գործիքներ պատրաստել: Մինչև այդ գործիքները պատրաստելը, փայտով կրակ կանենք:

— Կրակները թռչո՞ւմ են,— զարմացան Ալին ու Արամը:

— Այո, ձեր աչքով կտեսնեք, երբ մութն ընկնի: Ալի՛, դու հիմա կրակը վառիր. Արա՛մ, դու էլ փայտ ջարդիր,— կարգադրեց վարպետ Բագրատն ու ինքն էլ կաղամբ ու կարտոֆիլ կտրտեց ճաշի համար:

***

Մթնեց: Կապույտ էր երկինքը, կապույտ էր ծովը, կապույտ էր կղզին: Վարպետ Բագրատն առաջին հերթի յոթ նավթագործներին տանում էր ծանոթացնելու կղզու հետ: Նրանք քայլում էին խշխշուն ավազի վրայով: Ծովը թվում էր անհատակ ու մռայլ: Թվում էր, թե մութը բարձրանում է ծովից ու տարածվում ամենուրեք: Երբեմն շատ մոտիկից թևերի շաչյուն էր լսվում: Դրանք քնից արթնացած ծովասագերն էին իրենց քամուն տալիս: Ափի մոտ բադերն այնպես էին չրխկացնում կտուցները, ասես ընկույզի կեղև էին փշրում:

— Ափսոս՝ հրացան չենք բերել: Այստեղ ամեն օր կարելի է բադի միս ուտել,— ասաց պնդակազմ մի երիտասարդ:

— Այստեղ բադ կարելի է որսալ առանց հրացանի,— խոսեց մի ուրիշ նավթագործ:

— Վարպե՛տ, ապա ո՞ւր են «հավերժական կրակները»— անհամբեր հարցրին Ալին ու Արամը:

— Ինչի՞ մասին եք խոսում, տղե՛րք, աշխարհում հավերժական ոչ մի բան չկա: Ասացեք՝ անշեջ կրակները: Նստեցեք, թեկուզ հենց այստեղ և դուք կտեսնեք:

Այս ասելով վարպետ Բագրատը նստեց թաց ավազի վրա: Տղաներն էլ նստեցին:

— Լսո՞ւմ եք,— ցածր ձայնով հարցրեց վարպետ Բագրատը:

Բոլորը մի պահ շունչները պահեցին: Մի քիչ հեռու ավազը խշշում էր, ասես գետինը շնչում էր: Նրանք մոտեցան: Փոքրիկ մի տարածության վրա ավազը կարծես եռում էր:

— Ա՛յ, հիմա կտեսնեք «հավերժական կրակները»,— ասաց վարպետ Բագրատը, լուցկին վառեց ու պահեց «եռացող» ավազից կես մետր բարձր: Հանկարծ թեթև պայթյուն լսվեց ու վեր բարձրացավ մանիշակագույն բոցը: Ավազը շարունակում էր «եռալ», իսկ նրանից մի մետր բարձր, օդի մեջ, ասես լւ թևերն էր թափահարում մի թռչուն: Նա երբեմն բարձրանում էր, երբեմն ցածրանում, բայց երբեք չէր իջնում գետնին:

— Իսկապես, որ թռչում է այդ կրակը,— ասաց Ալին՝ զարմանքից կլորացած աչքերը հառած օդի մեջ ճախրող կապույտ բոցին:

— Դե, իհարկե՝ այդ բարձրության վրա կաթսա չի դրվի:

— Հենց վաղը նրան այդ բարձրությունից կիջեցնենք,—ասաց վարպետ Բագրատն ու նորից մի քանի տեղ վառեց այդ կրակներից:

— Եվ ահա, այս կապույտ բոցերից էլ իմացել են, որ այստեղ նավթ կա, չէ՞, վարպե՛տ,— հիացած ասաց Արամը:

— Այդ կրակներից են իմացել: Եվ դա իմացել են ոչ թե նավթագործ երկրաբանները, այլ մի ձկնորս:

Բագրատը պատմեց այդ ձկնորսի մասին ու ավելացրեց.

— Մեր մարդիկ այն հին կրակապաշտները չեն, որոնց մասին դու և Ալին խոսում էիք: Բաքվեցի ձկնորսն անգամ գիտե, որ այդ կրակները ստորերկրյա գազի արդյունք են, որոնք և վկայում են նավթի գոյության մասին:

Երկար ժամանակ վարպետ Բագրատը տղաներին չկարողացավ հեռացնել այդ կրակների մոտից: Նրանք նստած, հիացմունքով դիտում էին օդի մեջ խաղացող մուգ մանիշակագույն բոցերը, որ լուսավորում էին իրենց շրջապատը և ծովի մի մասը:

# ՊԱՏԱՆԻ ՏԱՂԱՆԴՆԵՐԸ

Մոսկվայի մանկական ստեղծագործության Համամիութենական յոթերորդ ցուցահանդեսում ներկայացված էին բոլոր ռեսպուբլիկաների շնորհալի երեխաների աշխատանքները: Ցուցահանդեսը կազմակերպող կոմիտեն Մոսկվա ուղարկված պատանի նկարիչների, քանդակագործների և ասեղնագործողների վեց հազար գործերից ընտրեց 850 աշխատանք: Ցուցահանդեսին մասնակցեցին նաև մեր ռեսպուբլիկայի շնորհալի պատանիները: Մոսկվացիները մեծ հետաքրքրությամբ դիտեցին նրանց մոտ ուսուն աշխատանք:



«Ծառազարդում ենք դպրոցի բակը»:
Նկար՝ ԱՎԵՏԻՔ ԱՍԱՏՐՅԱՆԻ
(3-րդ դասարանի աշակերտ)

Բազմաթիվ ու բազմազան է այդ երեխաների ստեղծագործության թեմատիկան:

Պատանիներն իրենց աշխատանքներում պատկերում են մեր բարեկարգվող քաղաքների շինարարությունը, նոր գյուղի ուրախ կյանքը, բերքառատ դաշտերն ու նորդ ջրանցքները: Նրանք անսահմանորեն սիրում են մեր մեծ առաջնորդներին, և իրենց ստեղծագործություններում պատկերում են նրանց անմոռանալի կերպարները:

Ուշագրավ են տասնհինգ տարեկան Լենմիր Բաղդասարյանի ջրաներկ աշխատանքները:

Ռոմիկ Ջուլհակյանը հաջողությամբ է նկարել հզոր էքսկավատորների և բեռնատար ավտոմեքենաների շարասյունը:

Խաղաղությանն է նվիրված Սարգիս Բաբայանի «Կորեուհին» քանդակը: Ամերիկյան ավիացիայի ռմբակոծությունից սպանվել է կորեացի կնոջ երեխան: Մայրը մի ձեռքով գրկել է նրան, մյուս ձեռքը բռունցք արած, զայրույթով՝ բողոքում է ամերիկյան գազանությունների դեմ:

Ցուցահանդեսը կազմակերպող կոմիտեն բարձր գնահատեց փոքրիկ քանդակագործի նուրբ և արտահայտիչ աշխատանքը և որոշեց ուղարկել մանկական ստեղծագործությունների միջազգային ցուցահանդեսին:

Միջազգային ցուցահանդես ուղարկելու արժանացան նաև Ժորա Գյուլխասյանի «Պիոներները Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի վրա» և Միհրան Օհանյանի «Թարմ բերք են ստացել» ջրաներկ նկարները:

Հաջողված գործեր են՝ Էդիկ Աղայանի «Պուշկինը բազկաթոռին», «Դոգոլի կիսանդրին», «Հնոցապանը» և «Կորեական զինվորները» կերակրում են



«Կուլտուրական սպասարկումը դաշտում հանգստի ժամին»:

Նկար՝ ՌՈՄԻԿ ՋՈՒԼՀԱԿՅԱՆԻ



Պատանի քանդակագործ ՍԱՐԳԻՍ ԲԱԲԱՅԱՆԸ իր «Կորեուհին սպանված երեխայի հետ» քանդակի վրա աշխատելիս:

խաղաղության աղավնիներին» քանդակները:

Պատանի ստեղծագործողների միութենական ցուցահանդեսին մասնակցել են նաև Ալիկ Ալոյանը իր «Բամբակ Հայրենիքին», Թագուշ Խաչատրյանը՝ «Գարնան դիմավորումը» ջրաներկ նկարներով, Էմիլ Պետրոսյանը՝ նատյուրմորտով, Ֆրիդա Եղիազարյանը՝ ռուս մեծ բանաստեղծ Վլադիմիր Մայակովսկու իր ասեղնագործած պորտրետով, Խաչիկ Դերձակյանը՝ «Անտառները» ջրաներկ նկարով և ուրիշներ:

Ցուցահանդեսի ամենափոքր մասնակիցը մեր ռեսպուբլիկայից վեց տարեկան Կարեն Փափազյանն է: Չնայած նա այս տարի է ընդունվել Պիոներների պալատի նկարչական խմբակ, բայց արդեն լավ է նկարում:

Ցուցահանդեսի այցելուները մեծ հետաքրքրությամբ դիտեցին փոքրիկ Կարենի «Կարմիր նավատորմիղ» ջրաներկ գունեղ նկարը:



«Հայկական ասեղնագործ ծածկոց»: Ձեռագործ՝ ՄԱՐԻԱՄ ԿԱՐԱՍՅԱՆԻ (6-րդ դասարանի աշակերտուհի):

Մեր պատանի ստեղծագործողները, ոգեվորված իրենց ձեռք բերած հաջողություններով, այժմ աշխատում են ավելի կատարելագործել իրենց արվեստը և եկող տարի միութենական ցուցահանդես ներկայանալ ավելի լավ աշխատանքներով:

Ֆոտոռեպրոդուկցիաները՝ Ք. ՍԵՎԱՆՅԱՆԻ




«Խաղաղության համար»: Նկար՝ ԹԵԼՄԱՆ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ

# ՀՈՂԱԳՆԴԻ ՏԱՆԻՔՆԵՐԻ ՎՐԱ

ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ

*Ձյունախառն բուքը մոլեգնում է. գագաթը մոտ է, շատ մոտ. բայց մի քանի քայլի վրա ոչինչ չի երևում։ Ինչ-որ տեղ աղմուկով գլորվում է սառցաբեկորը և խուլ թնդյունով գահավիժում անդունդը։*

*— Զգո՛ւյշ, ձախ կողմը անդունդ է,— կանչում է առջևից բարձրացող ալպինիստը։ Նա սրածայր մուրճը մխրճում է քարաժայռի բացվածքի մեջ ու շրջանցում սառցաշերտը։*

*Քարաժայռի հետևից չեն երևում արշավի մասնակիցները։ Միայն թոկի ցնցումներից առաջատարը զգում է, թե ինչպես ընկերները հաղթահարում են վերելքը։ Թոկը ավելի է ձգվում, ուրեմն մեկն ու մեկը կորցրել է հավասարակշռությունն ու կախվել անդունդի վրա։ Նա ամբողջ մարմնով կառչում է քարաժայռին, թոկի ծայրը հազիվ ամրացնում է ցցվածքին։ Ընկերը փրկված է։ Վարպետը բարձրանում է տեղից. երևում է ընկերոջ գլուխը։ Հովհաննեսը օգնում է նրան։ Հետո երևում է երկրորդը, երրորդը և բարձրության վրա հավաքվում են բոլորը։*

*— Ո՞վ պոկվեց տեղից,— հարցնում է սպորտի վարպետ Հովհաննես Գալստյանը։*

*Աղջիկներից մեկը խոնարհում է գլուխը։*

*— Ոչի՜նչ, այդպիսի բաներ պատահում են, կարևորն այն է, որ չվախենաք,— հանգստացնում է վարպետը.— զգույշ պետք է լինել. ալպինիստի սխալը միայն իր համար չէ, որ վտանգավոր է. նա կարող է իր հետևից ընկերներին ձգել դեպի անդունդը, եթե իհարկե նրանք նույնպես անզգույշ են։*

*Խումբը հոգնած է։ Այստեղից սկսվելու է վերջին վերելքը։ Միայն վարպետն է, որ հոգնածություն չի զգում։ Նա շատ ու շատ անգամ է եղել «հողագնդի տանիքների» վրա։ Քառասուներեք անգամ բարձրացել է Կազբեկի գագաթը, մի քանի անգամ հաղթահարել է Արագածը։ Որտե՞ղ ասես որ չի եղել նա։*

*— Վրաններ խփեք ու այստեղ սպասեցեք ինձ։ Ես մենակ կբարձրանամ, կստուգեմ ճանապարհը,— կարգադրում է սպորտի վարպետը։*

*Եվ նա առանց հանգստանալու շարունակում է ճանապարհը։ Քիչ հետո ընկերները էլ չեն տեսնում նրան։ Մշուշը կուլ է տալիս ալպինիստին և միայն նրա մուրճի ձայնն է լսվում հեռվից։*

***

*Ալպինիստ Հովհաննես Գալստյանը դեռ մանուկ հասակից հետաքրքրվում էր սպորտով։ 1924 թվականին, երբ նա սովորում էր Թբիլիսիի տրամվայի վագոնավարների դպրոցում, պարապում էր ըմբշամարտով։ Տասնչորս տարեկան տղան արտակարգ ֆիզիկական ընդունակություններ ուներ, ամուր էր և անընկճելի։ Բոլորը կարծում էին, թե նա անպայման ըմբշամարտի չեմպիոն կդառնա. բայց նա իր հաջողությունների ամենալավ շրջանում անսպասելիորեն թողեց սպորտի այդ ձևը։*

*1935 թվականն էր։ Ամառվա մի օր աշխատանքից տուն վերադառնալիս նա կարդաց պատին փակցված հայտարարությունը.*

*«Ալյոշա և Ալեքսանդրա Ջափարիձեները պատրաստվում են Կազբեկ բարձրանալ։ Ովքեր ցանկանում են մասնակցել ալպինիստական այդ մասսայական արշավին, պետք է ներկայանան ալպինիստական ակումբ բժշկական ստուգման համար»։*

*Նա ներկայացավ ալպինիզմի նշանավոր վարպետներին։ Սկզբում միայն հետաքրքրությունից դրդված. «Ասում են Կազբեկի գագաթից երևում է Թբիլիսին» մտածում էր նա։ Ամրակազմ երիտասարդը դուր եկավ Ալյոշա և Ալեքսանդրա Ջափարիձեներին։ Նրանք Հովհաննեսին վերցրին իրենց հետ։*

*Վերելքին մասնակցում էին 150 ալպինիստ-սիրողներ։ Սկզբում ճանապարհը հեշտ էր, իսկ հետո շատերը սկսեցին ետ մնալ, հոգնել։ Միայն Հովհաննեսն էր, որ փորձված ալպինիստների հետ բարձրանում էր վեր։ Վերջին վերելքի մոտ խումբը նոսրացավ։ Մնացին 10 հոգի։ Հիվանդներն ու հոգնածները չշարունակեցին վերելքը։ Փորձված*

ալպինիստների հետ սիրողներից միայն Հովհաննեսը գագաթ հասավ։ Իսկապես, Կազբեկի գագաթից երևում էր Թբիլիսին. բայց նա, իհարկե, արդեն այդ մասին չէր մտածում։ Կազբեկի վրայից երևում էին Կովկասյան լեռնաշղթայի ձյունափայլ գագաթները՝ հողագնդի տանիքները։ Դեռ որքա՜ն վերելքներ էին սպասում նրան։

— Դուք առաջնակարգ ալպինիստ կդառնաք,— ասաց Հովհաննեսին Ալյոշա Ջափարիձեն,— և թերևս չեմպիոն, միայն թե պետք է լրջորեն զբաղվեք ալպինիզմով։

Սա դեռ սկիզբն էր։ Երբ նա վերադարձավ Թբիլիսի, ասաց ընկերներին.

— Էլ ես ըմբշամարտով չեմ զբաղվելու, ես ցանկանում եմ պայքարել բնության դեմ։

Եվ այդպես էլ եղավ. նա թողեց ըմբշամարտը և դարձավ ալպինիստ։ Բայց նրան միշտ էլ օգնության եկավ սպորտի հին ձևը, որին նա այնպես հանկարծակի «դավաճանեց»։ Այդ ձևը ամրացրել, կոփել էր նրան, պատրաստել բարձունքներ նվաճելու համար։



Խումբը սպասում էր առաջնորդին։ Անցավ ևս մի ժամ ու հանկարծ մշուշի միջից գծագրվեց սպորտի վարպետի կերպարանքը։ Նա զգուշորեն իջնում էր դեպի վրանները։

— Կարելի է,— ասաց նա,— կարելի է ճանապարհը շարունակել. բայց պետք է զգույշ լինել։ Ես առջևից կգնամ, կամրացնեմ թոկը և միայն իմ ազդանշանից հետո կսկսեք վերելքը։

Խումբը, որ արդեն հանգստացել էր, ճանապարհվելու պատրաստվեց։ Միայն նա՝ Հովհաննես Գալստյանը չէր հանգստացել ու հոգնածություն էլ չէր զգում։

Վերելքն անչափ վտանգավոր էր։ Վարպետը ամրացնում էր թոկը, հետո ազդանշան էր տալիս ու իր ողջ մարմնի ծանրությամբ կառչում էր հանդույցին։ Վերելքի մասնակիցները բարձրանում էին։ Երբ նրանք հավաքվում էին նվաճված առաջին հարթակի վրա, վարպետը երկրորդ հարթակից ազդանշան էր տալիս, և այսպես շարունակ։

Բոլորը հասան Արագածի գագաթը. ոչ ոք ետ չմնաց։ Այստեղ հորիզոնը պարզ էր։ Միայն ուժեղ քամին էր մոլեգնում, իսկ ոտքերի տակ հավաքված ամպերի մեջ փայլատակում ու մարում էր կայծակը։

Վերելքը նվաճված էր։ Տասնյոթ ալպինիստներ 1952 թվականին կտրել անցել էին Երևան, Ախտա, Ծաղկաձոր, Սևան, Դիլիջան, Կիրովական, Կալինինո, Ստեփանավան, Լենինական տարածությունը և հասել էին Արագածի գագաթին, Այստեղից սկսվում էր վայրէջքը դեպի Երևան։

Վայրէջքը նույնքան դժվար է, որքան վերելքը, իսկ օրն արդեն երեկոյանում էր։ Հարկավոր էր իջնել դեպի Արագածի աստղադիտարանը, ուր որոշել էին գիշերել։

Վարպետն առաջինը իջավ, ստուգեց ճանապարհը և վերադառնալով կարգադրեց.

— Ես կմնամ վերջում, կպահեմ թոկը և կօգնեմ ետ մնացողներին. առջևից կգնա Զատինյան Աղվանը։

Խումբը ձգվեց։ Ալպինիստները շարժվեցին մեկը մյուսի հետևից։ Սկսվեց վայրէջքը։ Վարպետը մնաց բարձունքի վրա։ Նա ամուր գրկել էր թոկը և մեխվել տեղում։ Եվ երբ բոլորը իջել էին, նա բարձունքից նայեց իր շուրջը, բաց թողեց կապը և ալպինիստական մուրճը մխրճելով սառցաշերտերի մեջ զգուշորեն սահեց ցած։

Դանդաղ, շատ դանդաղ իջնում էր վարպետը. ոչ ոք չէր պահում թոկը, ոչ ոք չէր օգնում նրա վայրէջքին, նրան ուղեկցում էր շատ տարիների փորձը, հաստատուն մտածված քայլը։ Զյան սահանքների մոտ նա ուշադիր փնտրում էր ընկերների ոտնահետքերը և այնտեղով անցնում։ Ահա և այստեղ սայթաքել է ընկերը։ Նա շրջանցեց սառցաբեկորը, հետո թոկը դցեց ցածում երևացող քարաժայռի վրա։ Օղակը գրկեց սրածայր քարը. այսպիսով նա կանխում էր անկման վտանգը։ Քանի-քանի՜ անգամ է նա գահավիժել բարձունքից և փրկարար օղակն ու ալպինիստի սրածայր մուրճը փրկել են նրա կյանքը։

Սա վերջին սառցաբեկորն է, այստեղից սկսվում է համեմատաբար հեշտ վայրէջքը։ Արդեն մթնում էր, երբ նրանք հասան Արագածի աստղադիտարանին։ Նրանց դիմավո-



Պատանի ալպինիստները լեռ բարձրանալիս։
Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

րեցին երիտասարդ գիտնականները։ Գիտնականները պատրաստվել էին ինչ-որ տեղ ճանապարհվելու, դահուկներով էին, հագնըված։

— Փոթորկոտ եղանակ է,— զգուշացրեց սպորտի վարպետը,— այս ժամին ճանապարհվելը վտանգավոր է։

— Մեր ընկերները վաղուց դուրս են եկել ու չեն վերադարձել,— պատասխանեց գիտնականներից մեկը,— պատրաստվել ենք որոնումների ելնելու։

— Դուք չեք կարող, ձեզ անծանոթ են ճանապարհները, ձեր փոխարեն մենք կըգնանք։

Նա չսպասեց պատասխանի։ Իր հետ վերցրեց չորս ալպինիստի ու դուրս եկավ։ Եղանակը քանի գնում վատանում էր։ Բքախառն քամին ձյունով էր լցրել անդունդները։ Անզգույշ ճամփորդը կարող էր թաղվել ձյան մեջ և էլ դուրս չգալ։

Հովհաննեսը կարգադրեց շղթա կազմած առաջանալ։ Հեռվում, մշուշի մեջ կորան աստղադիտարանի կրակները։ Նրանք ձեռքի լամպերով որոնում էին դահուկների հետքեր, բայց քամին և ձյունն արդեն ծածկել էին ամեն ինչ և ոչինչ չէր երևում։ Հանկարծ սպորտի վարպետը կանգ առավ։ Երկու սրածայր ականջների նման, ձյան միջից ցցվել էին դահուկների ծայրեր։ Նա սկսեց զգուշորեն մոտենալ։ Ձյունը փլվում էր ոտքերի տակ, սահում. նա պառկեց փորի վրա և սկսեց սողալ, այսպես ավելի քիչ էր վտանգավոր։ Դահուկներից աջ, ձյան մեջ թաղված էր մի մարդ. նա հազիվ էր շնչում։ Սպորտի վարպետը թոկը առաջ նետեց, մարդը չբռնեց։ «Սառել է» տագնապով մտածեց սպորտի վարպետը։

— Տղանե՛ր, այստեղ մոտերքում են մնացածները,— բացագանչեց նա ընկերներին,— զգույշ մոտեցեք, անդունդի վրա ենք կախված։

Շատ երկար թվաց նրան այս փոքրիկ անցումը։ Սպորտի վարպետը ամուր բռնեց ձյան մեջ թաղվածի թևը և նորից սկսեց ետ սողալ։ Ձյունը համառում էր, ահռելի ուժ էր պետք, որպեսզի սառած ձյան միջից դուրս հաներ մարմինը, բայց նա ըմբշամարտիկ էր եղել. ձյունը տեղի տվեց։ Նա գիտակցու-

թյունը կորցրած երիտասարդին մեջքին առած սկսեց ճեղքել անընդհատ վար սահող ձյան հոսանքը ու երբ արդեն կտրել էր վտանգավոր ճանապարհը, բարձրացավ տեղից և շտապով սկսեց ձյունով շփել երիտասարդ գիտնականի սառած մարմինը։

Չորս ժամ տևեց այս որոնումը, չորս ժամից հետո նրանք հոգնած վերադարձան աստղադիտարան փրկված գիտնականներին շալակած։

Առավոտ վաղ նրանք թողեցին Արագածի աստղադիտարանը։ Ցածում, Արագածի ստորոտի վրա խոր աշուն էր։ Ճանապարհը դարձել էր հեշտ ու հանգիստ։ Նրանք կտրել, անցել էին մոտ 650 կիլոմետր տարածություն։ Նրանք վերադառնում էին Երևան։

***

Սպորտի վարպետը շատ ու շատ գագաթներ է նվաճել, նա համարյա թե եղել է Կովկասյան լեռնաշղթայի բոլոր բարձունքների վրա, այն էլ մի քանի անգամ։

1952 թվականին նա Կովկասյան Ուշբա և Շխելդա գագաթները ամենակարճ ժամանակում անցնելով նվաճեց Սովետական Միության չեմպիոնի կոչումը։

Դուք նրան կարող եք միշտ էլ ճանաչել փողոցում։ Ձմռանը, երբ դեռ բոլորի մաշկը սպիտակ է, նրա դեմքը աղյուսագույն է և արևից այրված։ Այդ նա է, հողագնդի տանիքների նվաճողը, մեր սովետական ալպինիզմի վարպետը։




## ՈՒՐԱԽ ՕՐԵՐ

Տարեվերջի քննությունները հանձնելուց հետո, մեր բակում քաղաքային ճամբար կազմակերպեցինք։

Բակի բոլոր պիոներները մասնակցեցին ճամբարի բացման աշխատանքներին։ Մի մասը փոքրիկ դրոշակներ էին պատրաստում, մի մասը նկարներ ու գրքեր էին հավաքում։ Երբ ճամբարային սենյակը կահավորեցինք և կայմը պատրաստեցինք, տեղի ունեցավ ճամբարի բացումը։ Հիմա ամեն օր մենք մեր հանգիստն անց ենք կացնում ուրախ ու հետաքրքիր։ Զանազան խաղեր ենք կազմակերպում, էքսկուրսիաներ ենք գնում, ուսումնասիրում հայրենի երկիրը։ Շուտով մենք էքսկուրսիա կգնանք դեպի Հովհաննես Թումանյանի տուն-թանգարանը և հրակայուն աղյուսի գործարանը։

Հետաքրքիր և ուրախ կանցնի մեր ամառը քաղաքային ճամբարում։

*ԷՄՄԱ ՂԱԶԱԽԵՑԱՆ*

*(Կիրովականի № 26 քաղաքային ճամբարի դրուժինայի խորհրդի նախագահ).*

## ՀԱՎԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԺԻՆԱՅՈՒՄ

Երևան տանող ճանապարհի վրա, ստվերախիտ ծառերի մեջ, բարձրանում է մեր հավաքական դրուժինայի ճամբարային դրոշը։

Մեր դպրոցի աշակերտներից շատերը հանգստանում են Ծաղկաձորի, Կիրովականի և այլ վայրերի պիոներական ճամբարներում։ Գյուղում մնացածներն էլ իրենց հանգիստն անց են կացնում հավաքական դրուժինայում։

Երեսուներկու պիոներ վաղ առավոտից մինչև երեկո հետաքրքիր խաղեր և էքսկուրսիաներ են կազմակերպում, ինքնագործունեության համերգներ են տալիս, զբաղվում են սպորտով։

Շուտով մեր ջոկատի ֆուտբոլիստները հանդիպումներ կունենան Երևանի քաղաքային ճամբարների ֆուտբոլիստների հետ։

Պիոներների հանգիստը հաջող կազմակերպելու գործում աչքի են ընկնում օղակավարներ՝ Ջուլիետա Նավասարդյանը, Վոլոդյա Նիկողոսյանը և ուրիշներ։

*Լ. ԱՀԱՐՈՆՅԱՆ*

*(Նորագավիթ գյուղի հավաքական դրուժինայի խորհրդի նախագահ).*

# ՎԼԱԴԻՄԻՐ ՎԼԱԴԻՄԻՐՈՎԻՉ ՄԱՅԱԿՈՎՍԿԻ

*(Մննդյան 60-ամյակը)*

*Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*

*(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)*

Մայակովսկիների տունը գտնվում էր վրացական Բաղդադի (այժմ Մայակովսկի) գյուղի մի ամրոցի շրջակայքում: Դեռ պահպանվում էին ամրոցի հնադարյան պարիսպները՝ բնդանոքների հատուկ պատվանդաններով և մարտկոցներով: Պարսպի հետևում խրամատ կար. իսկ խրամատից այն կողմը տարածվում էին գեղեցիկ, փարթամ անտառներ: Անտառներից վերև լեռներն էին:

Սովետական մեծ բանաստեղծ Վլադիմիր Մայակովսկու վաղ տպավորությունները կապվում են այդ գյուղի հետ, որտեղ ծնվել է նա 1893 թվականին: Նրա հայրը անտառապահ էր: Փոքրիկ Վոլոդիային անմիջապես շրջապատում էին վրացի գյուղացիների երեխաները: Նրանց ընտանիքում վրացերեն շատ լավ էին խոսում:

Վոլոդյան շատ էր սիրում բնությունը: Հաճախ էր բարձրանում լեռների կատարները և այնտեղից հիանում շրջապատով: Յոթ տարեկան հասակում նա արդեն անտառային շրջագայությունների էր դուրս գալիս հոր հետ միասին: Նա գրանանաչ դարձավ տանը՝ մոր և քույրերի մոտ:

Մայակովսկիների ընտանիքը շուտով տեղափոխվեց Քութաիսի: 1902 թվականի գարնանը Վոլոդյան քննություն տվեց և ընդունվեց գիմնազիայի նախապատրաստական դասարանը: Գիմնազիայում նա շատ լավ էր սովորում...

Հետո կյանքն այլ ընթացք ստացավ: Սկսվեց ռուս-ճապոնական պատերազմը: Վրա հասավ 1905 թվականի ռևոլյուցիան: Կովկասը բռնվեց ռևոլյուցիայի բոցերով: Քութաիսիում նույնպես ցույցեր և միտինգներ էին լինում: Մայակովսկին էլ էր մասնակցում այդպիսի ցույցերին:

1906 թվականին Մայակովսկու հայրը մահացավ: Մայրը Վոլոդիայի և նրա քույրերի՝ Օլգայի ու Լյուդայի հետ տեղափոխվեց Մոսկվա: Այնտեղ նրանք ապրում էին ծայրահեղ կարիքի մեջ. բայց Վոլոդյան շարունակում էր ուսումը: Մոսկվայում էր, որ նա ծանոթացավ ռևոլյուցիոներների հետ. ագիտատոր էր: Շուտով նա ձերբակալվեց, բայց քանի որ փոքր էր, ազատեցին: Նա իր կյանքում երեք անգամ ընկել է ցարական բանտի մութ խցերը: Բուտիրյան բանտի միայնակ ու մռայլ խցում էր, որ նա սկսեց ոտանավորներ գրել: Բանտից դուրս գալով նա մտավ գեղանկարչության դպրոց: Դրանից առաջ էլ Մայակովսկին սովորել էր նկարչություն, իսկ այդտեղ նա ծանոթացավ ֆուտուրիստների հետ: Նրա վաղ գործերը մեծ քաղաքների կյանքն էին պատկերում, որտեղ աղքատությունը, սովը և հիվանդությունները լին տարածված:

Մ. Գորկին դեռ 1915 թվականին Մայակովսկու մասին գրում էր. «Նա երիտասարդ է, ընդամենը քսան տարեկան, նա կգրի լավ, իսկական բանաստեղծություններ»:



Այդ շրջանում Մայակովսկին գրեց իր պոեմներից մեկը՝ «Վարտիքավոր ամպը»: Պոեմում նա խոսում էր վերահաս ռևոլյուցիայի մասին: Պոեմն ուզում էր տպագրել տալ, բայց երբ ներկայացրեց գրաքննությանը, ասացին.

— Դուք, ի՞նչ է, տաժանավա՞յր եք ուզում գնալ:

Եվ նա իր կամքին հակառակ մի քանի էջ ջնջեց: Միայն ռևոլյուցիայից հետո, 1918 թվականին, այդ պոեմը տպագրվեց լրիվ:

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան բանաստեղծի վրա խոշոր ազդեցություն գործեց: Նա դարձավ ռևոլյուցիայի մեծ երգիչը: Կարդալով «Ձախ մարշը» մեր աչքի առջև վերակենդանանում են զինվորների, բանվորների և նավաստիների ամուր շարքերը, որոնք քայլում են առաջ...

Մայակովսկին ռուս պոեզիայում կատարեց այն դերը, ինչ Մ. Գորկին ռուսական արձակի մեջ: Նա երգում էր նոր մարդուն և նրա հույզերը: Նա բանաստեղծության ձևի մեջ ռեֆորմ կատարեց, ստեղծեց իր սեփական ոճը, հարստացրեց բանաստեղծության չափերը և ռիթմը:

Մայակովսկին շատ երգիծական բանաստեղծու-

թյուններ է գրել: 1919 թվականին նա նկարիչ Չերեմնիխի հետ միասին հիմնեց «Ռոստայի երգիծական պատուհանները»: Այդտեղի հիմնական աշխատակիցը ինքն էր: Նա գրում էր ոտանավորներ, արձակ գործեր և ինքն իր գրածը նկարազարդում: Այդտեղ Մայակովսկին ծաղրի էր ենթարկում մեր երկրի թշնամիներին: «Պատուհանները» մեծ հաջողություն էին վայելում, դրվում էին խանութների ցուցափեղկերում: Նրանց շուրջը հավաքվում էին անցորդների մեծ խմբեր...

Աճեց մեր երկիրը և հզորացավ: Դրա հետ միասին հզորացավ և Մայակովսկու տաղանդը: Նա իր գրչով պայքարում էր այն բոլոր թերությունների դեմ, որ դրսևորվում էին մեր մարդկանց աշխատանքում: 1922 թվականին «Իզվեստիա» թերթում լույս տեսավ «Ժողովամոլները» բանաստեղծությունը: Լենինը կարդաց դա և շատ հավանեց...

1924 թվականին մեռավ մեծ Լենինը: Ամբողջ աշխարհի աշխատավորները մեծ վիշտ ապրեցին նրա մահվան առթիվ: Մայակովսկին ուզում էր այնպիսի մի պոեմ գրել, որն արժանի լինի առաջնորդին: Եվ նա գրեց «Վլադիմիր Իլյիչ Լենին» պոեմը: Պոեմը նա կարդաց բանվորական շատ ժողովներում: Բանվորները մեծ հիացմունքով ընդունեցին այդ գործը:

Մայակովսկին մեծ կտավի վրա տալիս է Լենինի կյանքի կարևոր դրվագները: Առաջնորդին մենք տեսնում ենք վաղ տարիներին, ռևոլյուցիոն բանվորների շրջանում: Նա համախմբում է աշխատավորներին ցարական միապետության վրա գրոհելու համար: Ահա Լենինը գրահապատի վրայից ճառ է արտասանում... Ահա և նա Սմոլնիում՝ ռևոլյուցիայի շտաբում: Մայակովսկին նկարագրում է Լենինի մահը, Սովետների համագումարը, Ստալինի երդումը լենինյան պատգամները կատարելու համար: Ժողովուրդը խոր վիշտ է ապրում, բայց հուսահատ չէ և համախմբվում է կոմունիստական պարտիայի շուրջը ապագան կառուցելու համար:

Մայակովսկին պարտիայի և Լենինի մասին գրում է.

Պարտիան և Լենինը—
Երկվորյակ եղբայրներ են.
Մայր պատմության համար
Ո՞րն արժեքն է ավելի:
Մենք ասում ենք—Լենին
Եվ հասկանում ենք պարտիա,
Մենք ասում ենք պարտիա
Եվ հասկանում ենք—Լենին:

Լենինը ռևոլյուցիայի հանճարն է: Բայց և երկրագնդի բոլոր մարդկանցից «ամենամարդկային մարդն է», «ամենաիմաստունը»: Նա անսահման սիրելի է ժողովրդին և բոլոր թշնամիների սարսափն է:

Մայակովսկին սովետական դարաշրջանի ամենամեծ բանաստեղծն է: Նա իր բանաստեղծություններով պայքարում էր կոմունիզմի հաղթանակի համար: Բանաստեղծը քայլում էր մեր երկիրը կառուցողների առաջին շարքերում: Նա մեծ վերափոխումների խանդավառ երգիչն էր, մեծ հայրենասեր: Նա ոչ միայն մեր այսօրն էր երգում, այլև մեր ապագան: Մայակովսկին մարտիկ բանաստեղծ էր, որն իր գրիչը հավասարեցրել էր սվինին: Ինչպես հերոսը սվինով գրոհում էր թշնամու վրա, այնպես էլ նա ուզում էր բանաստեղծական հատու խոսքով գրոհել: Նա մեր ժողովրդին դաստիարակում էր սովետական ջերմ հայրենասիրությամբ: Նա անսահման կերպով սիրում էր Մոսկվան, ռուս մեծ ժողովրդին և նրա մեծ լեզուն, որով խոսել է Լենինը...

1922—29 թվականներին Մայակովսկին ինն անգամ եղավ արտասահմանում: Նա համեմատեց սոցիալիզմի երկիրը կապիտալիստական աշխարհի հետ: Եվ որքան խորն էր նա թափանցում կյանքի մեջ, այնքան խորանում էր նրա հայրենասիրությունը: Այդպիսի այցելություններից մեկի արդյունքն է «Բանաստեղծություն սովետական պասպորտի մասին» գործը, որի մեջ հեղինակը հպարտանում է մեծ Սովետական Միության քաղաքացի լինելու համար: Հպարտության զգացմունքով են լի նաև «Լավ է» և «Ամբողջ ձայնով» պոեմները: «Լավ է» պոեմը Մայակովսկին գրեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տասնամյակի առթիվ: Նա երգում է մեր սոցիալիստական երջանիկ երկիրը, որտեղ և «ապրելն է լավ և կյանքն է լավ»:

Մայակովսկին եղել է Ֆրանսիայում, Գերմանիայում, Իսպանիայում, ամերիկյան երկու մայր ցամաքների մի քանի մասերում:

... Ահա ամերիկյան երկրներից մեկի փողոցով անցնում է նեգր Վիլլին: Նա նիհար է: Կյանքի բեռը ծռել է նրա մեջքը: Նա կոշիկ մաքրող է. իր կյանքում ինչքա՜ն սպիտակ մարդու կոշիկ է մաքրել: Երբ այդ փոշին միացնես, մի ամբողջ փոշու անտառ կգոյանա: Վիլլին, այդ համեստ աշխատավորը, իր արդար պահանջն է ներկայացնում տիրոջը: Տերը լսում է և հարվածում նեգր Վիլլիին: Նրա դեմքն արյունոտվում է: Նրանք սպիտակները մարդ չեն համարում: Մայակովսկին «Բլաք ընդ ուայթ» ոտանավորում զորեղ ձայնով բողոքում է այդ անարդարության դեմ:

Մայակովսկին Ամերիկայի մասին գրած բանաստեղծություններում նկարագրում է Նյու-Յորքի կյանքը: Մարդկանց կապիտալիստական քաղաքը այլանդակում է, խեղանդամ դարձնում: Աշխատավորների կյանքը կապիտալիզմի աշխարհում խղճուկ է, անտանելի: Մայակովսկին ցույց է տալիս նաև, որ այնտեղ կյանքի բարիքները վայելում են միայն հարուստները: Նա պայքարի է կոչում մարդկանց...

Մայակովսկին գրել է նաև մանկական բանաստեղծություններ: Դրանցով նա սովորեցնում է ճանաչել աշխարհը, բնությունը, մարդուն, սեր է արթնացնում դեպի ուսումը, աշխատանքը: Բանաստեղծը դատապարտում է ծուլությունը, անկարգությունը: Նա սրում է երեխայի երևակայությունը, ընդլայնում նրա մտահորիզոնը: Հիշողության մեջ վառ են մնում «Ինչն է վատը, ինչը՝ լավ», «Ի՞նչ դառնալ», «Ո՞ր էջն էլ որ բաց անես, դու գազաններ կտեսնես», «Կարդա՝ ման արի Չինաստան ու Փարիզ» և այլն:

Բանաստեղծը վերցնում է առանձին օրինակներ երեխաների կյանքից և ցույց է տալիս, թե ինչքա՜ն

վատ է, երբ երեխան անկարգ է, փնթի, կեղտոտ, պատռում է գրքերը, տետրերը, գնդակը: Ինչքա՜ն վատ է, երբ երեխան վախկոտ է, կամ թե չար է և ծեծում է իրենից փոքրերին: Մայակովսկին գովում է կարգապահ, աշխատասեր երեխային:

Երեխաները դեռ մանկական տարիքից երազում են, թե իրենք ինչ պետք է դառնան: Մեկը մտածում է, որ ինքը կլինի հյուսն, մյուսը՝ ինժեներ, մի երրորդը՝ բժիշկ կամ բանվոր, օդաչու... Մայակովսկին սովորեցնում է, որ ամեն մեկը կարող է լինել այն, ինչ ուզում է, քանի որ այդ բոլոր գործերն էլ լավ են: Միայն հարկավոր է ընտրել այնպիսի գործ, որը սիրում ես և կարող ես պատվով կատարել, Հայրենիքի առաջ ամոթով չմնալու համար:

Ինչի մասին որ Մայակովսկին գրել է, շատ լավ է գրել: Նրա բանաստեղծությունները, պոեմները և այլ գործերը մեր մեծ գրականության թանկագին գոհարներն են: Նրանից սովորել ու սովորում են այժմ ոչ միայն սովետական, այլև ամբողջ աշխարհի առաջավոր գրողները: Մայակովսկու ժառանգությունը պատկանում է մեր ժողովրդին, որն այսօր նշում է նրա ծննդյան վաթսուն տարին: Նրան ամենից լավ բնութագրել է Ի. Վ. Ստալինը. նա ասել է. «Մայակովսկին եղել է և մնում է մեր սովետական դարաշրջանի լավագույն, ամենատաղանդավոր բանաստեղծը»:

# ԿԱՅԾԱԿ-ԵՐԳ

*ՎԼ. ՄԱՅԱԿՈՎՍԿԻ*

*Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Թռի՛ր արագ, դու կայծակ-երգ,
Անցի՛ր ծովերը կապույտ,
Պատմի՛ր, որ մենք,
այսօր ունենք
Պիոներական համաքույր:
Եկե՛ք ուրախ,
եկեք զվարթ
Խարույկի մոտ մեր պայծառ,
Դո՛ւք, եղբայրներ մեր հարազատ,
Քույրեր անքիվ,
անհամար:
Ղեկավարի՛ր,
առաջ մեզ տար՝
Աշխատանքի,
պայքարի,
Մեր սիրելի, մեր հզոր մայր,
Ռեսպուբլիկա վիթխարի:
Մեծանում ենք,
հասակ առնում,
Ծերո՛ւկ-աշխարհ,
լավ նայիր,
Այգեստան է
արդեն դառնում
Անապատը ամայի:
Ուր աչք ածես,
սովետական
Մեր աշխարհն է
հարազատ,
Մեր մեծ հայրը
բանվորական
Ողջ դաստակարգն է
պողպատ:
Դու, հին սերունդ,
դու էլ արի,
Մեզ հետ կարդա
և գրիր,
Դու էլ հիմա,



Ընկե՛ր տատի,
Այբուբենը սովորիր:
Առա՛ջ,
առա՛ջ,
շարքեր հզոր,
Մեծ ուղիով Լենինի,
Պարտիան է մեզ համար այսօր
Ջոկատավար սիրելի:

*Թարգմ. Պ. ՄԻՐԶԱՅԵԼՅԱՆ*

# ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ՄԱՐԿԱՅՈՎ

*ՄԱՐԻՑԱ ՎՇՏՈՒՆԻ*

*Նկ. Լ. ԿՈՋՈՅԱՆԻ*

*Արմենը չորրորդ դասարան փոխադրվեց գովասանագրով։ Հայրը նրա համար մի նոր հեծանիվ գնեց։ Ուրախ էր Արմենը, անչափ ուրախ, վերջապես նա մի նոր հեծանիվ ունեցավ, այնպե՜ս գեղեցիկ, այնպե՜ս փայլուն։*

*— Գիտե՞ս, հայրի՛կ, այս հեծանիվը Լենինականում են պատրաստել,— ասաց Արմենը ուշադիր զննելով հեծանիվը,— ա՛յ, նայիր՝ տես...*

*— Այո,— պատասխանեց հայրը,— դա գործարանի մարկան է։ Հիանալի հեծանիվ է. ամենքն էլ ցանկանում են գնել։ Ահա սա էլ հեծանիվի անձնագիրն է։*

*— Անձնագի՞ր,— զարմացավ Արմենը,— միթե հեծանիվը անձնագի՞ր է ունենում։*

*— Իհարկե. սա հնարավորություն է տալիս գնորդին, մեկ տարվա ընթացքում, հեծանիվի որևէ մասի փչանալու դեպքում գործարանից նորը պահանջելու։ Բայց դու, Արմե՛ն, աշխատիր լավ պահել։*

*Արմենը տարակուսանքով դիտեց անձնագիրը, որի վրա պարզ գրված էր հեծանիվի համարը և մի անուն-ազգանուն։ «Արտաշես Պապոյան» կարդաց Արմենը և հարցական հայացքով նայեց հորը։*

*— Հենց դա էլ այս հեծանիվը հավաքող բանվորի անունն է։ Ամենից առաջ նա է պատասխանատու սրա որակի համար,— ասաց հայրը։*

*Անցավ մեկ ամիս։ Արմենն արդեն կարողանում էր ազատ կերպով հեծանիվ վարել։ Մայրը նրան ամեն օր զբոսնելու էր տանում։ Մանկական այգում նա մտերմացավ մի խումբ փոքրիկ հեծանվորդների հետ և սկսեց մրցել։*

*— Իմ հեծանիվը ամենից լավն է,— ասում էր Արմենը։*

*— Ո՛չ, իմն է լավը,— առարկում էր մեկ ուրիշը։*

*— Դե, եկ մրցենք,— ասում էր Արմենը և համարձակ սկսում խաղը։*

*Մի անգամ Արմենի հետ ցանկացավ մրցել Սուրիկ անունով մի տղա. նրա հեծանիվը ճիշտ այնպիսին էր, ինչպես Արմենինը. միայն՝ ոչ թե երկու, այլ երեք անիվանի։*

*— Է՜, քեզ հետ մրցելու կարիք էլ չկա,— վիրավորված ասաց Արմենը,— քո հեծանիվը երեք անիվանի է, փոքրերի համար է։*

*— Ես կարող եմ երկու անիվանի դարձնել,— հպարտությամբ պատասխանեց Սուրիկը։*

*— Չես կարող,— հանգիստ ասաց Արմենը և հեծանիվի ղեկը ուղղելով առաջ սլացավ։*

*Մինչ Արմենը հպարտ կեցվածքով զարտուղի պտույտներ էր գործում, Սուրիկը վազեց տատի մոտ, որ ծառերի հովին նստած թոռնիկի խաղն էր դիտում, նրանից ինչ-որ բան վերցրեց և սկսեց արագ-արագ քանդել հեծանիվի երրորդ անիվը։*

*— Դե՛, նայիր, հիմա հավատո՞ւմ ես, որ իմ հեծանիվը ամենից լավն է,— հպարտությամբ ասաց Սուրիկը, երբ հեծանիվը արդեն երկու անիվանի էր դարձել։*

*— Ճիշտ որ այդ հեծանիվը ավելի հարմար է,— համոզված ասաց Արմենը։*

*Տուն գալուն պես այդ մասին նա պատմեց հորը։*

*— Զարմանալու ոչինչ չկա,— ասաց հայրը.— գործարանը վերջերս սկսել է հեծանիվներն այնպես պատրաստել, որ ուզած ժամանակ կարելի լինի այն դարձնել երկու, կամ երեք անիվանի։ Իսկ այս հեծանիվը, ինչպես երևում է ավելի առաջ է պատրաստվել. բայց մենք կարող ենք նամակ գրել գործարանի դիրեկտորին և խնդրել երրորդ անիվը, իր հարմարանքով։*

*Նամակն ուղարկելուց հետո Արմենն ամեն օր անհամբեր սպասում էր պատասխանի։ Մի օր էլ ստացավ ցանկալի կապոցը։ Այնպես ուրախ էր նա, որ մինչ հայրը երրորդ անիվն էր ամրացնում, Արմենը ձեռքերն իրար շփելով պտտվում էր նրա շուրջը։*

— Հիմա, Սոֆի՛կ, քեզ էլ կարող եմ իմ հեծանիվով զբոսնելու տանել,— ասում էր Արմենն իր փոքրիկ քրոջը։

Երևանում շոգ օրեր սկսվեցին։ Երեխաներից շատերը մեկնեցին ճամբար։ Ոմանք



...այս հեծանիվը Լենինականում են պատրաստել...

էլ իրենց ծնողների հետ ամառանոց գնացին։ Քաղաքում մնացած երեխաները տեղավորվեցին մանկական հրապարակներում։

— Իսկ մենք կգնանք Լենինական, տատիկի մոտ հյուր,— ասաց մայրը։

— Լենինակա՞ն,— կրկնեց Արմենն ու մի պահ մտովին փոխադրվեց այնտեղ՝ հեծանիվի գործարան։

Մի շաբաթ էր, որ Արմենը Լենինականումն էր։ Ուրախ էր անցնում նրա կյանքը ընկերների շրջանում։ Բակում երեխաները պիոներական ճամբար կազմակերպեցին և ամեն օր ջոկատներով էքսկուրսիա էին գնում քաղաքի գործարաններն ու ֆաբրիկաները։ Լինում էին թանգարաններում, դիտում ցուցահանդեսները, երբեմն էլ նախաճաշիկ վերցրած զբոսնելու էին գնում դեպի քաղաքի տեսարժան վայրերը։ Այս ամենը, իհարկե, շատ լավ էր. բայց Արմենը անհամբեր ինչ-որ բանի էր սպասում։ Եվ ահա ճամբարի խորհուրդը որոշեց էքսկուրսիա գնալ հեծանիվի գործարան։

Հաջորդ օրը նախաճաշից հետո պիոներական ջոկատը առաջ շարժվեց։ Կենտրոնական հրապարակում նրանք մեքենա նստեցին և ուրախ երգելով տեղ հասան։

Դիրեկտորի կարգադրությամբ պահակը երեխաներին ներս թողեց։ Բակում նրանց դիմավորեց գործարանի պարտիական կազմակերպության քարտուղար ընկեր Գաբրիելյանը։ Նա սիրալիր բարևեց երեխաներին և առաջնորդեց դեպի ցեխերը։

Նա երեխաներին ցույց տվեց գործարանի մեխանիկական ցեխը, որտեղ պատրաստվում են հեծանիվի բոլոր մետաղյա մասերը։

Այնուհետև Գաբրիելյանը երեխաներին տարավ մամլող ցեխ։ Այստեղ բանվորները բոլորն էլ երիտասարդներ էին, արհեստագործական ուսումնարանի նախկին սաներ, որոնք արդեն ինքնուրույն աշխատողներ էին դարձել։ Մեծ-մեծ մեքենաների առջև նստած նրանցից ամեն մեկը մի աշխատանք էր կատարում. նրանք մշակում էին մեխանիկական ցեխում պատրաստված մասերը։ Մեկը հեծանիվի փոքրիկ անիվներն էր պատրաստում, մյուսն այդ անիվներն իր մեքենայով դարձնում էր ատամնավոր։ Մեկը դրանց վրա պտուտակների համար անցք էր բացում, չորրորդն իր մեքենայով հղկում էր ու մաքրում։

— Այս երկու բաժիններում հեծանիվի անհրաժեշտ մասերը պատրաստելուց հետո, ուղարկում են մյուս ցեխերը՝ ներկելու և նիկելապատելու համար,— ասաց Գաբրիելյանն ու երեխաներին առաջ տարավ։

Նրանք մտան մի ընդարձակ սենյակ, ուր հատակին շարված արկղները լցված էին փափուկ թեփով։ Բանվորներից ոմանք փոքրիկ հատոցներով հղկում ու մաքրում էին պատրաստի դետալները, ազատում ժանգից ու կեղտից, ապա ծածկում էին թեփով, որ նորից չժանգոտի։

— Սա նիկելապատման ցեխի մի ենթաբաժինն է։ Այստեղ հեծանիվի մասերը մաք-

րում ու պատրաստում են նիկելապատման համար։

Երեխաները հեռվից դիտեցին ընդարձակ աշխատասրահը։ Այստեղ երկշարք դրված վաննաների մեջ լցված էին քիմիական զանազան լուծույթներ, իսկ նրանցում, մետաղյա բարակ ձողերից կախված էին հեծանիվի զանազան մասեր՝ ղեկեր, ատամնավոր փոքրիկ անիվներ ու զանազան պտուտակներ։

— Մեր ցեխում շատ նորարարներ կան,— ասաց ներկման ցեխի պետ Մամիկոն Համբարյանը.— նրանք իրենց խելացի առաջարկություններով ավելի են հեշտացնում աշխատանքը, խնայում նյութը և բարձրացնում աշխատանքի որակը։ Մենք ամեն ամիս մեր խնայած նյութերով ներկում ենք 200 հեծանիվի զանազան մասեր։

Հավաքման ցեխի պետ Արշակ Գրիգորյանը երեխաներին ասաց.

— Այստեղ կենտրոնացվում են գործարանում պատրաստված հեծանիվի բոլոր մասերը։ Բանվորներից ամեն մեկը մի գործ է կատարում. տեսնո՞ւմ եք, մեկը հեծանիվի անիվներին ռետինե հաստ շրջանակ է հագցնում, մյուսը պողպատյա բարակ ձողեր է ամրացնում, մի ուրիշը անիվներն է ամրացնում, երրորդը՝ զանգն է ամրացնում, մյուսը՝ շղթան է տեղադրում. և այսպես, մինչև որ հեծանիվը պատրաստ լինի։ Այստեղ շատ բանվորներ կրկնակի առաջադրանք են կատարում։ Այ տեսնո՞ւմ եք այս երիտասարդ տղային. ստախանովական բանվոր է՝ Արտաշես Պապոյանը. նա 40-ի փոխարեն օրական հավաքում է 100—120 հեծանիվ։

Այս անունն ասես սթափեցրեց Արմենին և նա առաջ գալով, ուշադիր նայեց նրան, ապա ասաց.

— Ուրեմն իմ հեծանիվը դո՞ւք եք պատրաստել, անձնագրի վրա ձեր անունն էր գրված։ Բայց գիտե՞ք ինչ. մի անգամ, երբ ես մրցում էի ընկերոջս հետ, հեծանիվի շղթան հանկարծ թուլացավ ու ես տանուլ տվեցի խաղը։

— Լսում եք, տղանե՛ր,— ասաց ցեխի պետը։— Ուրեմն հարկավոր է ավելի լավ աշխատել։

Բանվորները ծիծաղեցին և գովեցին Արմենի համարձակությունը։

Հետո երեխաները գնացին գործարանի պահեստը։ Պահեստում շատ հեծանիվներ կային, բոլորն էլ գեղեցիկ ու գրավիչ։ Երեխաների դեմքերը միանգամից պայծառացան, երբ տեսան հեծանիվների խիտ շարքերը։

— Շուտով այս հեծանիվները կուղարկվեն մեր Միության բոլոր քաղաքներն ու գյուղերը. նույնիսկ հեռավոր Սիբիր ու Կարելո-Ֆիննական ռեսպուբլիկա։ Գիտե՞ք, թե որքա՜ն պահանջ կա։ Մենք ամեն օր նամակներ ենք ստանում զանազան քաղաքներից։ Բոլորը խնդրում են իրենց ավելի շատ հեծանիվներ ուղարկել։ Նոր հնգամյակի ընթացքում երկու և երեք անգամ կավելանա մեր թողարկած հեծանիվների թիվը։ Եկող տարի որ մեզ մոտ հյուր գաք, շատ նորություններ կտեսնեք։ Մի շարք աշխատանքներ, որ հիմա ձեռքով են կատարվում, կմեքենայացվեն. կկառուցվեն նոր շենքեր։ Եվ այս ամենը ձեզ համար, սիրելի երեխանե՛ր, որպեսզի ձեր մանկությունը լինի ուրախ ու բերկրալի,— վերջացրեց իր զրույցը ընկեր Գաբրիելյանը։

Կեսօրին մոտ էր, երբ երեխաները հրաժեշտ տվին ու վերադարձան։ Հեռվից դեռ երկար ժամանակ լսվում էր նրանց ուրախ ու զնգուն երգը։ Հաջորդ օրը հավաքույթում նրանք պատմեցին իրենց տպավորությունների մասին և ամփոփելով այն, գրի առան համբարի օրագրում։



# ՔԱՂԱՔԱՅԻՆ ՃԱՄԲԱՐՈՒՄ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

— Ի՞նչ աղմուկ է մեր բակում.
Այդ ովքե՞ր են աղմկում.
— Պիոներներն են, տատի՛ ջան,
Աշխատում են ժրաջան:
Մեր նոր շենքի լայն բակում
Նրանք ճամբար են սարքում:
Վեր կաց, տատի՛, գնանք տես.
Թե չես կարող՝ կօգնեմ քեզ:



Սանդուղքներով՝ թա՛կ, թա՛կ, թա՛կ,
Տատ ու թոռնիկ իջան բակ:
— Ա՛յ քեզ հրա՞շք, ա՛յ քեզ բա՞ն.
Ի՞նչ եք անում, Հակո՛բ ջան:
Մեղմ ժպիտով ու բարի
Խոսեց պետը ճամբարի.
— Շամամ տատի, մեր բակում
Մենք ճամբար ենք պատրաստում...

Տատին տեսավ, թե ինչպես
Պիոներները ժպտերես
Աշխատում են անդադար,
Կրում ավազ, հող ու քար,
Տախտակներ են սղոցում
Ու սենյակ են կառուցում:
Խաղադաշտն են լավ հարթել,
Ավազանն են նորոգել...

Շամամ տատին հիացած,
Ձեռնափայտը դրեց ցած.
— Սեդա՛, Սեդա՛, ա՛յ աղջի,
Պարապ մնալն էլ բան չի.
Ասեղս բեր մի տեսնեմ.
Վարագույրն էլ ես կարեմ...
Ու որքան ուժն էր ներում,
Օգնեց և այլ գործերում:

***

Երբ աստղերը փայլեցին,
Ժիր հավքերը քնեցին,
Անուշ զեփյուռը փչեց,
Պիոներական փողն հնչեց.
Կայմի վրա բարձր ու մեծ
Ալ դրոշը ծածանվեց,
Հետո էլ խումբը մանկական
Երգեց Հիմնը Հայկական:

Էլ ո՞վ ասես չէր երգում.
Էլ ո՞վ ասես չէր պարում,
Անգամ Շամամ տատին ծեր,
Թաշկինակ էր ձեռքն առել,
Մի մանկան հետ նազանի
Պարում էր նա «Սևանի»:

Ու մինչև ուշ երեկո
Մանուկները՝ ուրախ, գոհ,
Երգեցին ու պար եկան
Ուրախացան, թարմացան.
«Գիշեր բարի» ասացին
Ու դեպի տուն գնացին...

# ԿԱՐՃԱՏԵՎ ԿՅԱՆՔՈՎ ԾԱՂԻԿԸ

Ց. ԱՂԱՍԱՐՅԱՆ

Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ

Ամեն շաբաթ օր Շողիկը լինում էր պապիկենց՛ տանը ու մնում մինչև հաջորդ օրը։ Նա ջրում էր ծաղիկները և մաքուր լաթով մաքրում տերևների փոշին։ Բայց Շողիկը շատ էր զարմանում, թե ի՞նչ է գտել պապիկն այն փշոտ գնդիկների ու անտերև ցողունների մեջ, որ պահում է գեղատեսիլ ծաղիկների շարքում։

Մի օր նա չհամբերեց և ասաց.

— Պապի՛կ, ինչի՞ են պետք այդ կակտուսները. ո՛չ տերև ունեն, ո՛չ ծաղիկ։ Ես չեմ սիրում դրանց։

— Չե՞ս սիրում։ Ժամանակը գա՝ շատ կսիրես, կակտուսը շատ լավ բույս է։

Պապիկի այս անորոշ պատասխանը շատ խորհրդավոր թվաց Շողիկին։

Վերջապես եկավ սպասած օրը։ Պապիկը Շողիկի ձեռքից բռնած տարավ կակտուսների մոտ։

Պատուհանագանի վրա երեք ծաղկաման կար։ Մեկի մեջ կակտուսի օպունցիա տեսակն էր, որի տափակ ու լայն ցողունները ծածկված էին բարակ, ասեղանման փշերով։ Երկրորդ ծաղկամանում ֆիլոկակտուս տեսակն էր՝ երկար-տերևանման ցողուններով. իսկ երրորդում օձաձև ցերեուսը, որը ծաղկամանից կախել էր կլոր ու երկար օձաձև ցողունները։ Դրանք բոլորն էլ զարդարված էին գեղեցիկ ծաղիկներով։

— Շատ լավ բույս է կակտուսը, Շողի՛կ. որ ճանաչես, չես կարող չսիրել։

— Ճիշտ է, պապի՛կ, լավ բույս է,— հանցավորի պես գլուխը կախած պատասխանեց Շողիկը։— Պապի՛կ, հիմա ուզում եմ կակտուսի բոլոր տեսակներն ունենալ։

— Բոլոր տեսակնե՞րը,— ծիծաղեց պապիկը,— այսինքն հազար հինգհարյուր տեսակ։

— Այդքան շա՞տ,— զարմացավ Շողիկը։— Բոլորն էլ ա՞յս չափի են, և այս ձևի՞։

— Ոչ։ Կան կակտուսներ, որոնց երկարությունը քսան մետր է։ Կան գնդաձև տեսակներ, որոնց գնդի տրամագիծը մոտ երկու մետր է, իսկ կշիռը՝ մի տոննա։ Կան տեսակներ էլ, որոնց մեծությունն ընկույզի չափ է։

— Պապի՛կ, հեքիա՞թ ես պատմում...

— Ի՞նչ հեքիաթ, ես պատմում եմ իմ աչքով տեսածը։



— Իսկ սա՞ ինչու չի ծաղկել, պապի՛կ,— ասաց Շողիկը՝ ցույց տալով կակտուս-ցերեուսը։

— Դա էլ կծաղկի, համբերիր,— պատասխանեց պապիկը։

Մի օր պապիկը զանգահարեց Շողիկին։

— Շողի՛կ, այսօր ցերեուսը ծաղկելու է, կգաս։

Շողիկն իսկույն նետվեց պապիկի «պարտեզը», սակայն ցերեուսի վրա ոչ մի ծաղիկ չնկատեց։

— Դեռ չի ծաղկել, նայի՞ր միայն կոկոն է տվել։ Այժմ դասերդ սովորիր, ընթրիր ու քնիր։ Երբ ծաղկելու ժամանակը գա, քեզ կարթնացնեմ...

Նա պապիկի հետ մտավ ծաղիկների սենյակը։ Այնտեղ մութ էր, երևի պապիկն այդ «հրաշքով» տարված, մոռացավ լույսը վառել։ Շողիկը մոտեցավ էլեկտրական կոճակին, որ լույսը վառի, պապիկը թույլ չտվեց։

— Պետք չէ,— ասաց նա,— այս «հրաշքը» մթնում պետք է տեսնել։ Եվ Շողիկի թևից բռնած տարավ դեպի ցերեուսի ծաղկամանը։



— Վա՜յ,— հիացմունքով բացականչեց Շողիկը՝ ակնապիշ նայելով ծաղկին։

Ցերեուսի կլոր ու փշոտ ցողունի վրա մի հսկայական աստղ էր փայլում։ Նա սպիտակ-ոսկեգույն էր՝ մոտ քսանհինգ սանտիմետր տրամագծով։ Նրա քսանհինգ ծաղկաթերթիկները սրածայր էին ու ձյունի պես ճերմակ։ Դրանց միջից փայլփլում էին մոտ վեցհարյուր ոսկեգույն առէջներ և լույս տալիս աստղի պես։ Սենյակը լցված էր ծաղկի անուշ բուրմունքով։ Շողիկը երկար ժամանակ նայում էր ու խոսք չէր գտնում իր հիացմունքն արտահայտելու։

— Լավ նայիր, Շողի՛կ ջան, առավոտյան ցավով պիտի հիշես,— խորհրդավոր ձևով ասաց պապիկը։

... Առավոտյան Շողիկն արթնացավ թե չէ, վազեց դեպի ցերեուսը և ի՜նչ տեսավ։ Այն հիասքանչ ծաղիկը, որ գիշերը փայլում էր պայծառ աստղի պես, կախել էր գլուխն ու թոշնել։

— Շատ կարճ է այս ծաղկի կյանքը,— բացատրեց պապիկը։— Սա ծաղկում է միայն գիշերը՝ ժամը տասից մինչև առավոտյան չորսը։ Այդ է պատճառը, որ այս ծաղիկն ստացել է «գիշերային պրինցեսի» անունը։

— Հրաշալի բույս է կակտուսը, պապի՛կ ջան, ինձ համար էլ ցանեք, խոստանում եմ լավ խնամել,— խնդրեց Շողիկը։

— Կակտուսը խնամք չի պահանջում, բո հոգատար խնամքից նա նույնիսկ կոչնչանա։

— Մի՞թե բույսը լավ խնամքից կոչնչանա,— զարմացած ընդհատեց Շողիկը։

— Կակտուսը մյուս բույսերի պես պահանջկոտ չէ։ Ահա, այն կեչիները, տեսնո՞ւմ ես,— պապիկը ցույց տվեց լայն պողոտան եզերող կեչիները,— սրանցից յուրաքանչյուրը օրական 70 լիտր ջուր է գոլորշիացնում իր տերևների միջոցով։ Իսկ կակտուսի տերևները փշերն են, որոնք ոչ մի կաթիլ ջուր չեն գոլորշիացնում։ Կակտուսի արմատները ծածկված են անթափանց խցանով, ընդունակ են երկար ժամանակ խոնավություն պահելու։ Նրանք հարմարվել են անապատային պայմաններին։

— Այժմ հասկացա, թե ինչո՞ւ են փշոտ։

— Բայց մի ուրիշ պատճառ էլ կա։ Կակտուսները քաղցրահամ են և հյութալի, եթե չլինեին նրանց այդ զենքը, կենդանիները վաղուց բնաջինջ կանեին։ Մինչդեռ նրանք փարթամորեն աճել են Մեքսիկայի, Կալիֆորնիայի և Բրազիլիայի հսկայական տարածությունների վրա։

— Ուրեմն նրանց ծաղիկներով ոչ ոք չի հիանում։

— Դու կարծում ես միայն ծաղի՞կն է նրանց առավելությունը։ Նրանք մեծ օգուտ են տալիս։

— Այդ փշերից օգո՞ւտ,— զարմացավ Շողիկը։

— Շատ օգտակար է կակտուսը։ Մի քանի տեսակների ամուր ու հեշտ հղկվող փայտը լավ շինանյութ է, իսկ փափուկ ու քաղցրահամ պտուղներից պատրաստում են մուրաբա, ճաշ, խորտիկներ, քաղցրահամ ջրեր։ Ցերեուսի մի շարք տեսակների պտուղները մորու կամ նարինջի համ ունեն։ Մի քանի տեսակների պտուղներից ալյուր են ստանում։ Կան նաև կաուչուկ և ներկեր տվող կակտուսներ։ Օպունցիայի մսոտ արմատներով Հարավային Ամերիկայում ոսկրի ջարդվածք են բուժում։ Կան նաև սրտի հիվանդություն բուժող կակտուսներ։ Տեսնո՞ւմ ես՝ որքան մեծ է կակտուսների տված օգուտը։

— Շատ վայրերում,— շարունակեց պապիկը,— կակտուսի վերնամաշկով կերակրում են անասուններին։ Շողի՛կ ջան, ես քեզ կակտուսի սերմեր կտամ, որ դպրոցում ցանեք, բազմացնեք։

# ՏԱՆԳՐԱՄԱ

*(Չինական ժողովրդական խաղ)*

Չինական հայտնի մաթեմատիկոս Տանգ-աի անունով այս խաղը կոչվում է՝ տանգրամա: Հատելով քառակուսին ստանում ենք յոթ կտոր, որոնցից հինգը հավասարասրուն ուղղանկյուն եռանկյունիներ են: Նրանցից երկուսը մեծ են և միաչափ, երկուսը՝ փոքր և դարձյալ միաչափ, իսկ վերջինը՝ միջակ: Ստացվում է նաև մի փոքրիկ քառակուսի ու մի շեղանկյուն: Հատվող քառակուսու երկու երեսն էլ պետք է նույն գույնի թղթից և հաստ լինի: Ցանկալի է ստվարաթղթի երկու կողմը սև թուղթ փակցնել, կամ ներկել սև տուշով ու հետո կտրել:

Յոթ կտորով կարելի է բազմապիսի ֆիգուրներ դասավորել: Խաղի ժամանակ հաղթող է ճանաչվում նա, ով ավելի արագ և շատ ֆիգուրներ է դասավորում: Չինաստանում լավագույն չեմպիոնները դասավորում են մի քանի հազար ֆիգուր: Մրցումները ղեկավարում են հատուկ դատավորներ և որոշում, դասավորված ֆիգուրը նմա՞ն է պատկերվող առարկային, թե՞ ոչ: Նրանք գրանցում են նաև խաղացողի դասավորած բոլոր ֆիգուրների անունները: Բոլոր ֆիգուրների մեջ պարտադիր կերպով պետք է գործածել քառակուսու յոթ կտորը:

Հատվածներ դասավորելու համար տալիս ենք մի քանի օրինակ, որտեղ առանձին հատվածների մեջ դիտավորյալ սպիտակ լուսանցքներ են թողնված: Խաղի ժամանակ լուսանցքներ չեն թողնում: Այս խաղը զարգացնում է հիշողությունը, հնարամտությունը, պատկերելու ընդունակությունը և ծանոթացնում է երկրաչափական ձևերին:

Գծագրեցեք և հատեք այսպիսի մի քառակուսի, փորձեցեք դասավորել այս ֆիգուրները և հետո հնարել նորերը:

*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*


Կատու


Տնակ


Ութ


Կենգուրու




Ձիավոր


Խոճկոր


Կամուրջ


Ծխամորճ


Ձուկ


Ձնդան


Սագ


Գլխարկ


Մուրճ


Նապաստակ

# ԱՆՑԿԱՑՆԵԼ ՇՐՋԱՆԱԿԸ

— Եկեք մի խաղ խաղանք,— առաջարկեց օղակավար Սուրիկը:

— Խաղա՛նք, խաղա՛նք,—բացականչեցին պիոներները:

Ջոկատավար Ռուբիկը լսեց նրանց ցանկությունը և գործի անցավ:

— Ապա դուրս եկեք հրապարակ և օղակներով շարվեցեք:

Օղակները շարվեցին:

Ջոկատավարը շարքերից 15 քայլ հեռու, ամեն մի շարքի դիմաց կավիճով մեկ մետր մեծությամբ քառակուսիներ գծեց և ապա նրանց մեջ դրեց երեխաների պատրաստած 40—45 սանտիմետր տրամագիծ ունեցող փայտե շրջանակները: Խաղը բացատրելուց հետո ջոկատավարը հրահանգեց.

— Ուշադրություն, վազքով մա՛րշ:

Շարքերի առաջին պիոներները վազեցին դեպի շրջանակները, վերցրին, վերից վար մարմնով անցկացրին, ապա վազելով եկան ու խփեցին հաջորդող պիոներների ձեռքերին: Սրանք ավելի արագ կրկնեցին առաջինների կատարածը:

Այսպես շարունակվեց խաղը: Խաղի ժամանակ երևաց, թե ո՛ր պիոներն է ճկուն, ճարպիկ ու արագաշարժ:

Երկրորդ օղակի պիոներների մեծ մասն այդպիսին էին և նրանք էլ տարան հաղթանակը:

Առաջին օղակի պիոներները սկսեցին խեթ նայել իրենց ընկերներին՝ Միշային ու Խաչիկին:

— Ի՞նչ է, չէի՞ք կարող արագ շարժվել: Ձեր պատճառով մեր օղակը պարտվեց: Շատ զբաղվեք ֆիզկուլտուրայով,— հանդիմանեց օղակավար Սուրիկը:

Միշան ու Խաչիկը զգացին, որ իրենք իսկապես պետք է զբաղվեն սպորտով:

Այս խաղը պիոներները կարող են կատարել նաև պարկեր հագած:

Վ. ՓԵՏՐՈՍՅԱՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը նկ. Ռ. ԱԹՈՒՍՏԱՄՅԱՆԻ




Խմբագիր՝ ՍԵՎՈՒՆՑ Գ.

Խմբագրական կոլեգիա՝ ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Զ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՏԱԼՅԱՆ Վ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 03000։ Պատվեր 421, տիրաժ 5000։ Տպագրական $2^1/_4$ մամուլ։ Ստորագրված է տպագրության 7.VII. 1953 թ.

Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.




### Մարիտե Մելնիկայտե

(1923—1943)

Հայրենական պատերազմի տարիներն էին: Ֆաշիստական պատժիչ մի զորամաս շրջապատել էր պարտիզանական ջոկատին: Պարտիզաններ մի անվեհեր աղջկա՝ Մարիտե Մելնիկայտեի գլխավորությամբ կռվում էին վերջին փամփուշտներ:

Եվ ահա, պայծառ մի միտք շողաց աղջկա գլխում:



— Հոգով ամուր եղեք, ընկերնե՛ր, մենք փրկված ենք. իմ հետևից,— բարձր ու զրնգուն հնչեց նրա ձայնը:

Եվ նա, ինչպես միշտ, ինքն առաջինը նետվեց գետը: Ջոկատը հետևեց իր հերոս հրամանատարի օրինակին և դուրս եկավ շրջապատումից:

Պատերազմի առաջին իսկ օրերին լիտվական ժողովրդի զավակ Մելնիկայտեն կամ ինչպես մտերմորեն կոչում էին նրան ընկերները՝ Մարիտեն թշնամու թիկունքում պարտիզանական ջոկատ կազմելով վրեժ էր լուծում ֆաշիստներից:

1943 թվականի հուլիսի 13-ին մի կարևոր ու վտանգավոր առաջադրանք կատարելու ժամանակ Մարիտեն իր հինգ ընկերներով անհավասար կռվի բռնվեց թշնամու մի մեծ ջոկատի հետ: Զոհվեցին նրա բոլոր ընկերները: Վիրավորված Մարիտեն վերջին նռնակը պայթեցրեց գազազած թշնամիների ոտների տակ:

Երբ նրան կախաղան էին բարձրացնում նա վերջին անգամ բացականչեց.

— Կեցցե՛ Սովետական Լիտվան:

Սովետական Միության Հերոս քսանամյա Մարիտե Մելնիկայտեի մասին այժմ երգեր է հյուսում լիտվական ժողովուրդը, որի պայծառ ապագայի համար նա զոհեց իր գեղեցիկ կյանքը:

### Վ. Գ. Կորոլենկո

Գետնախորշը, ուտեղ երբեք չէր թափանցում արևի շողը, հրեշի պես բացել էր բերանը երեխաներին կլանելու համար: Մայրական փաղաքշանքից ու ջերմ գրկից զուրկ Մառուսյան այդտեղ օրը օրին խամրում էր: Քաղցը, մերկությունն ու խավար գետնախորշը գերեզման իջեցրին նրան ու նրա պես հարյուրավոր երեխաների:

Ահա այդ մասին է պատմում ռուս նշանավոր գրող-դեմոկրատ Վ. Գ. Կորոլենկոն իր «Գետնախորշի երեխաները» պատմվածքում:

Դեռ մանկական տարիներից Կորոլենկոն երազում էր հերոս դառնալ, որպեսզի պաշտպանի հարազատ ժողովրդի շահերը: Նա իր կյանքի մեծ մասն անցկացրեց ցարական դաժան կարգերի օրոք: Ռեվոլյուցիոն շարժումներին մասնակցելու համար Կորոլենկոն աքսորվում է Սիբիր: Աքսորումն էլ նա շարունակում է իր գրական գործունեությունը:



Կորոլենկոն գրել է բազմաթիվ պատմվածքներ, վիպակներ և այլ գործեր: Նրա գլխավոր գործը «Իմ ժամանակակիցների պատմությո՜ւնը» գիրքն է: Նա վարպետությամբ է պատկերել հասարակ մարդկանց կյանքը իր «Մակարի երազը», «Գետը հորդում է», «Վատ շրջապատում» և այլ պատմվածքներում:

Խորը հուզմունքով են կարդացվում Կորոլենկոյի ստեղծագործությունները: Նա տեսավ 1917 թվականի հոկտեմբերյան օրերը: Նրա նկարագրած ծանր կյանքն ընդմիշտ անցյալի գիրկն անցավ:

### Նար-Դոս

(1867—1933)



— Առանց ինձ չայ էլ ես խմում, հա՞... Ա՛յ քեզ... տասը կտոր շաքարից ութն ես թողել, ութ կտոր դառնաս դու... ա՛յ քեզ, ա՛յ... Նստ էժան ենք առնում հա՞, որ քոռ ու փուչ ես անում, քոռանաս ու փչանաս դու... ա՛յ քեզ, ա՛յ, այ...

Ու սուր եղունգները դանակի պես ակոսում էին Անանիի վտիտ մարմինը: Կոպիտ սկեսուրը ծեծում էր իր հարսին, որը համարձակվել էր առանց ասելու շաքարամանից երկու կտոր շաքար վերցնել երեխայի համար:

Այսպես դաժան էր աշխատավորների՝ արհեստավորների, հասարակ մարդկանց կյանքը հին կարգերում, որը ճշմարտացի և հուզիչ կերպով իր գրվածքներում տալիս է հայ նշանավոր գրող Նար-Դոսը: Նար-Դոսը գրել է «Մահը», «Պայքար», «Սպանված աղավնին» վիպակներն ու վեպերը, ինչպես նաև բազմաթիվ պատմվածքներ:

Ապրելով նեղության ու զրկանքի մեջ Նար-Դոսն այդ ամենը լավ է նկարագրել իր «Նեղ օրերից մեկը» պատմվածքում: Ռևոլյուցիայից առաջ երկար ժամանակ նա որպես քարտուղար աշխատել է խմբագրություններում: Իր գրվածքները Նար-Դոսը գրել է գիշերները՝ հանգստից խլված ժամերին: Մեր երկրում սովետական կարգեր հաստատվելուց հետո ամեն աշխատանքից ազատ, նյութապես ապահովված գրողը ամբողջովին նվիրվեց իր սիրած գրական զբաղմունքին:

ԳԻՆԸ 2 Ռ.

# Բ Ն Ո Ւ Թ Յ Ա Ն   Գ Ր Կ Ո Ւ Մ



Ֆոտո-էտյուդ՝ Ա. ՋԱԼԱԼՅԱՆԻ